ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԽԴ.

ՊՐՈՖ. Հ. ԳԷԼՑԷՐ

# ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ

## ԲԻՒԶԱՆԴԵԱՆ

## ԲԱՆԱԿԱԹԵՄԵՐՈՒ ԴՐՈՒԹԵԱՆ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԳԱՐԵԳԻՆ ԳԱՐԱՆՖԻԼԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1903.

---

ՊՐՈՖ. Հ. ԳԵԼՑԵՐ

# ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ ԲԻՒԶԱՆԴԵԱՆ

## ԲԱՆԱԿԱԹԵՄԵՐՈՒ ԴՐՈՒԹԵԱՆ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԽԴ.

ՊՐՈՖ. Հ. ԳԷԼՑԷՐ

# ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ

## ԲԻՒԶԱՆԴԵԱՆ

## ԲԱՆԱԿԱԹԵՄԵՐՈՒ ԴՐՈՒԹԵԱՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1903.

ՊՐՈՖ. Հ. ԳԷԼՑԷՐ

# ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ

# ԲԵՒԵՋԱՆԴԵԱՆ

# ԲԱՆԱԿԱԹԵՄԵՐՈՒ ԴՐՈՒԹԵԱՆ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԳԱՐԵԳԻՆ ԳԱՐԱՆՖԻԼԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1903.

## Ա Զ Դ

Մատենանս թարգմանութիւն է Պրոֆ. Հ. Գէլցէրի „Die Genesis der byzantinischen Themenverfassung" (Leipzig 1899) անուն պատմական լուրջ մէկ ուսումնասիրութեան:

Ուսումնասիրութեանս նիւթն ու առարկան է՝ Միջին դարու մէջ բովանդակ Բիւզանդեան պետութեան վրայ սփռուած զինուորական թեմերու կամ շրջանակներու ծագման, կազմակերպութեան ու յընթացս ժամանակաց կրած այլեւայլ փոփոխութեանց պատմութիւնը: — Թեմ կամ Բանակաթեմ անունը փոխառութիւն է ուղղակի յն. θέμα բառին, որ նախնապէս պարզապէս զօրաց գումարտակ կամ լեգէոն կը նշանակէր, բայց յետոյ զինուորական վարչութեանց կամ բանակաժողովի շրջաններուն համար եւս սկսաւ գործածուիլ:

Ուսումնասիրութիւնս — ինչպէս կը տեսնուի — նուիրուած է ուղղակի Բիւզանդեան կայսրութեան, սակայն մեզի Հայոցս համար եւս՝ մեր քաղաքային եւ զինուորական պատմութեան հայող շատ կարեւոր ծանօթութիւններ մէջը կը պարունակէ: Փոքր Հայոց — որ Դ. դարէն ի վեր Բիւզանդեան դրօշին կը ծառայէր — Հայկական թեմը՝ մեծ դեր խաղացած էր արեւելեան հռոմէական պետութեան ճակատագրին վրայ, իւր քաջամարտիկ զօրավարներովն ու զօռ այրուձի գնդերովը նեցուկ ըլլալով յոյն գահուն, որ յերեւաց Արաբացւոց զամ քան զզամ ի կործանումն կը փութար: Հայազէտ

*Հեղինակը սոյն այս գումարտակին ծագումն ու կազմակերպութիւնը քննած ատենը՝ չի մոռնար նաեւ հայազգի մարտիկներու պետութեան պաշտպանութեան համար ցոյց տուած անձնուրաց ծառայութիւնները կրկին ու կրկին անգամ շեշտելը:*

*Հայազէտիս ընդարձակ երկասիրութեան (էջ մեծիջեան 8° 133) մենք միայն այն մասերը թարգմանեցինք, որոնք մեր ազգային պատմութեան հետ սերտ առընչութիւն ունէին եւ կամ նիւթին ամբողջութեանը համար էական էին, իսկ ոչ այնչափ կարեւոր մասերը՝ կամ համառօտելով թարգմանեցինք եւ կամ բոլորովին յապաւեցինք:*

*ԹԱՐԳՄԱՆԻՉԸ*

# ՑԱՆԿ

# ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ ԲԻՒԶԱՆԴԵԱՆ ԲԱՆԱԿԱԹԵՄԵՐՈՒ ԴՐՈՒԹԵԱՆ

## Ա.

### Ներածութիւն:

*Բիւզանդեան բանակաթեմերու ծագման ու զարգացման վրայ նոր լոյս սփռեցին՝ Ֆինլէ[1], Ռամբօյ[2], Ռամզէ[3], Շլումբէրգէր[4], Բէօրի[5] իրենց քննական հետազօտութիւններովը, բայց գլխաւորաբար Դիլ[6], որ յատկապէս այն նիւթին վրայ մանրակրկիտ ուսումնասիրութիւն մը հրատարակեց: Բանակաթեմս, որ Է. դարուն լոկ բանակի կազմակերպութիւն ըլլալով՝ արդէն մեծ ազդեցութիւնը սկսած էր տարածել քաղաքային վարչութեան վրայ, Ը. դարուն դարագլուխ կազմող օրէնսդրական հրամանագրով մը՝ միեւնոյն ժամանակ թէ զինուորական եւ թէ քաղաքական կազմակեր-*

---

1 G. Finlay, history of the byzantine and greek empires from DCCXVI to MCCCCLIII. Vol. I Edinburgh and London 1854.

2 A. Rambaud, l'empire Grec au dixième siècle. Par. 1870. p. 175 ff.

3 W. M. Ramsay, the historical geography of Asia Minor. Lond. 1890.

4 Schlumberger, sigillographie de l'empire byzantin. Paris 1889.

5 J. B. Bury, a history of the later Roman empire. II, p. 339–351.

6 Ch. Diehl, l'origine du régime des thèmes dans l'empire Byzantin Par. 1896.

պութեան փոխուեցաւ։ Դժբախտաբար այս փոփոխութեան պարագաներու մասին ժամանակագիրներէ մեզի աւանդուածը՝ հարեւանցի գրուած քանի մ'անանկ աննշանակ ծանօթութիւններ են, որ մեզի հասկցընել կու տան այն փոփոխութիւնը, քան թէ ուղղակի մեր առջեւը կը պարզեն զայն։ Թեմերու բաժանմանց համաձայն եղած պետութեան գաւառներու ստորագրութիւնը՝ Թ. եւ Ժ. դարերէն ասդին կ'իյնայ։ Վերոյիշեալ հեղինակներն ալ հասարակ սա սխալն ըրած են, որ իրենց քննութեանց մէջ հնագոյն աղբիւրները գրեթէ առանց նկատողութեան առնելու՝ նորագոյնները միայն գործածած են։ Օրինակի աղագաւ, Ժ. դարէն Կոստանդին Ծիրանածնի ոչ այնչափ վստահելի թեմերու ստորագրութիւնն իրենց քննութեանց հիմ բռնելով՝ նկատողութեան առած չեն Ը. դարուն կարեւոր աղբիւրները, Իբն Հորդադբէյի եւ անոր յաջորդին՝ Կոդամայի գրութիւնները, մինչ անոնք այսօր մեզի — ոչ-արեւելագիտացս — դիւրամատչելի են եղած de Goejeի հրատարակութեամբն ու թարգմանութեամբը։ Ստոյգ է թէ de Goejeի այս գլուխ գործոցը 1889ին լոյս տեսաւ, սակայն ասի արդարացուցում մը չէ, վասն զի Կ. Բարբիէ դը Մէյնար արդէն իսկ 1865ին „Journal asiatique"ի մէջ՝ Իբն Հորդադբէյի գործքը բնագրով ու թարգմանութեամբ ծանօթացուցած էր։ Կ. Բարբիէի հրատարակութիւնն ու թարգմանութիւնը հարկ էր որ շատ անկատար ըլլար, ըստ որում նոյն ժամանակ միայն Օքսֆըրդեան միակ ձեռագիրը ծանօթ էր։ Այս անկատարութիւնը մեծանուն հեղինակն ալ համեստութեամբ կը խոստովանի։ Սակայն հրատարակութեան իսկ ձեռնարկելը մեծ արդիւնք է իրեն։ Սա ալ կայ որ Դէֆրէմէրի (Defrémery) վերոյիշեալ արաբացի հեղինակին գործոց Բիւզանդական մասերը լաւ ուսումնասիրած էր։ Դժբախտաբար այս գործոյն

ալ Բիւզանդագէտք մտադրութիւն չընծայեցին։ Ռամսէյի դարագլուխ կազմող ուսումնասիրութիւնը յիրաւի արժանի է այն գրուատեաց, որ Թ. Մոմսէնէ ընծայուեցաւ գործոյն լոյս տեսած ատենը։ Ներուի սակայն մեզի սա դիտողութիւնը միայն ընել, որ եթէ Ռամսէյ իւր հարեւանցի գործածած աղբիւրներէն այնպէս օգտուիլ գիտնար՝ ինչպէս օգտուած է Հիերոկլէս ժողովոց արձանագրութիւններէն ու տեղեկագիրներէն, անշուշտ աշխարհագրութեան մասին այնչափ անպատեհութիւնք տեղի չէին ունենար իւր երկին մէջ։

## Բ.

### Յուստինիանոսի ըրած բարենորոգութիւնք։

Յուստինիանոսի կայսրութեան ժամանակ՝ կենդրոնական կառավարութիւնը՝ Դիոկղետիանոսէ ու Կոստանդիանոսէ հաստատուած ու խստիւ գործադրուած՝ քաղաքական ու զինուորական վարչութեանց իրարմէ բոլորովին անջատուելու դրութիւնը չափաւորած եւ կամ ըստ մասին ջնջած էր։ Այս կարգադրութիւնք սակայն առ հասարակ առժամանակեայ էին եւ կամ բոլորովին տարբեր հետեւութիւնն ունեցան, ինչպէս ունեցաւ վերջէն բանակաթեմերու կարգադրութիւնը։ Զինուորական այս կարգադրութեամբ՝ զօրաց վարիչներու կը տրուէին միանգամայն ոչ-զինուորական գործքեր, իսկ Յուստինիանոս Եգիպտոսի անհանդարտ ու ապստամբամիտ Աղեքսանդրիա մայրաքաղաքին ոչ-զինուորական կամ քաղաքային կուսակալին տուած էր միեւնոյն ժամանակ զինուորական իշխանութիւն թէ՛ քաղքին եւ թէ՛ Եգիպտոսի Ա. եւ Բ. նահանգներուն վրայ։ Կ'որոշուի թէ իւր հրամանին տակ գտնուող զօրաբաժինը պիտի բաղկանար միշտ 600 զինուորէ։ Այս կարգադրութիւնը յաջորդ կայսերաց ժամանակ եւս անխախտ ու անփոփոխ մնաց, Աղեքսանդրիոյ կուսակալն իւր զինուորական

բարձր իշխանութեանցը պատճառաւ "զօրավար" տիտղոսն ալ ընդունած էր երկրորդաբար: Այս կարգադրութիւնը տեւեց մինչեւ Արաբացւոց արշաւանքը, ինչպէս յայտնի է Յովհաննու Նիկիուպօլսեցւոյ* եւ այլոց գրութիւններէն:

## Գ.

### Երկու Վեցերորդպետութեանց ծագումը:

Ինչպէս տեսանք Յուստինիանոսի ըրած կարգադրութիւնքը բանակաթեմերու կազմակերպութեան հետ սերտ աղերս մը չունէին: Մաւրիկիոս կայսեր (582—602) հիմնած Արեւմտից երկու գլխաւոր կուսակալութիւնները, Իտալիոյ եւ Ափրիկէի Վեցերորդպետութիւնները առիթ ու օրինակ եղան բանակաթեմերու կազմակերպութեան: Այս ծանր հետեւութիւն ունեցող ներքին կազմակերպութեան պատճառը՝ զուտ արտաքին էր: Ոչ թէ քաղաքագիտական խորունկ մտածմամբ, այլ՝ պարագայից եւ պետութեան դէմ սպառնացող յարաճուն վտանգներուն բերմամբը ստիպուեցաւ Բիւզանդեան կառավարութիւնը, պետութեան ամէնէն աւելի վտանգի ենթարկուած Արեւմտեան նահանգներուն մէջ՝ գրեթէ լիազօր իշխանութեամբ զինուորական հրամանատարութիւններ հաստատել: Կասկածոտ կառավարութիւնը, որ երբեմն հանճարեղ Բեղիսարի գործունէութեան

* Յովհ. Նիկիուպոլսոյ (Ստորին Եգիպտոս) եպ.ը Է. դարուն վերջերը գրած է տիեզերական ժամանակագրութիւն մը՝ սկսելով Ադամէն: Ընդհ. պատմութեան համար շատ մեծ նշանակութիւն ունին իր ժամանակագրութեան գլխաւորաբար վերջին մասերը, ուր՝ իբր ժամանակակից եւ նաեւ իբր ականատես վկայ՝ կը պատմէ Մահմետականաց Եգիպտոսի վրայ տիրապետելուն պատմութիւնը: (Հմմտ. K. Krumbacher, Gesch. der byzantinischen Lit. p. 403 եւն.): Ծ. Թ.

առջեւ խոչընդոտ յարուցած էր, պետութեան մէջ այսպիսի իշխանութիւններն ակամայ հաստատեց: Լոնգոբարտացիք Իտալիա յարձակելով՝ երկրին երկու երրորդական մասը Բիւզանդացւոց ձեռքէն յափշտակած էին. իսկ տակաւին չնուաճուած փոքրիկ մասին վրայ գտնուող սակաւաձեռն պահապան զօրքը՝ մեծ ճգամբ հազիւ հող թշնամեաց մշտատեւ յարձակմանց դէմ՝ ինքզինքը կրնար պաշտպանել: Ափրիկէի մէջ հռոմէական կալուածոց՝ նման վտանգը կը սպառնային գոռ Մաւրուզները (Կաբիլները): Յուստինիանոսի կառավարութեան առեն իսկ՝ Ափրիկէի Բիւզանդեան կալուածոց սահմանները՝ քանի մ՚անգամ Կարքեդոնի շրջակայքին ու ծովեզերեայ քաղաքներուն վրայ ամփոփուեցան: Յուստինոս Բ.ի ժամանակ Բիւզանդացւոց այստեղ կրած շարաչար պարտութիւնները կը պատմէ Յովհ. Բիկլարոս: Յուստինիանոսի նոր նուաճած արեւմտեան գաւառները պատերազմի մշտատեւ վիճակի մէջ էին: Այս ամէն պարագաներուն մէջ դնելով, արեւելեան-հռոմէական պետութիւնը խոհականութեամբ պատշաճ համարեցաւ Իտալիոյ եւ Ափրիկէի Վեցերորդպետութիւնները հիմնել:

"Վեցերորդապետ„ (exarchus) անունը՝ նորահնար տիտղոս մըն էր, փոխանակ՝ „Magister militum per Italiam, per Africam" (Իշխան զօրուն ընդ Իտալիա, ընդ Ափրիկէ) հին յորջորջման:

## Գ.

## Բանակաթեմերուն կազմակերպութեան սկիզբը:

Միայն Կոստանդին Ծիրանածին կայսրն (911—947) է, որ արեւելեան ու արեւմտեան բանակաթեմերուն ծագման վրայ մեզի տեղեկութիւն կու տայ: Սակայն դժբախտաբար իր տուած տեղեկութիւնքն ամենայն մասամբ վստահելի չեն:

Կայսրն իսկ՝ իր տուած տեղեկութիւններէն շատերուն քննութեան կարօտ ըլլալը զգացած ըլլալով՝ զանոնք վերապահութեամբ կը հաղորդէ։ Այսպէս Հայկական թեմին (Ἀρμενιάκων θέμα) սկզբնաւորութեան վրայ թէեւ ուղիղ, սակայն արտաքոյ կարգի զգուշութեամբ հետեւեալը կը գրէ. „δοκῶ δὲ εἰπεῖν, ὅτι ἐπὶ Ἡρακλείου τοῦ βασιλέως καὶ τῶν κάτω χρόνων τὴν τοιαύτην προσηγορίαν ἐκληρονόμησεν“ (Ինծ պատշաճ թուի ասել, եթէ առ Հերակլեաւ արքայիւ եւ ի յետին ժամանակս զյորջորջումս զայս ընկալան)։ Իսկ առ Ռոմանոս որդին պետութեան կառավարութեան մասին գրած Յիշատակարանին մէջ կը ջանայ ինչ ինչ թեմերու մասին եղած անճիշդ ենթադրութիւններն՝ ուղղել։ Այսու ամենայնիւ բանակաթեմերուն ծագման վրայօք իր տուած տեղեկութիւններէն շատերն անհրաժեշտ կարեւորութիւն ունին մեզի՝ անոնց մինչեւ իր ժամանակն կրած այլեւայլ փոփոխմունքը կամ զարգացմունքը ուսումնասիրելու համար։

Արեւմտեան Նահանգաց Զ. դարուն վերջերը ունեցած աղէտալի վիճակը կը տեսնուէր Է. դարուն նաեւ Արեւելք։ Բիւզանդեան կայսրութիւնն իր գոյութիւնը պահպանելու համար դար մ'ամբողջ դիւցազնաբար պատերազմեցաւ։ Բուլղարաց ու Սլաւաց Հեմոս թերակղզւոյն վրայ ըրած անդուլ յարձակմունքը, Արաբացւոց ընդ ծով եւ ընդ ցամաք Փոքուն Ասիոյ, կղզեաց եւ Կ. Պոլսոյ վրայ ըրած արշաւանքները կը պահանջէին որ ձեռք առնուէր ամէն տրամադրելի միջոց։ Ի հարկէ՝ այսպիսի պարագայից մէջ՝ պետութիւնը վերահաս վտանգներէ ազատելու եւ փրկելու գլխաւոր հոգէն զատ՝ ուրիշ ամէն բան երկրորդական նշանակութիւն կրնար ունենալ։ Ուստի եւ զարմանալու չենք, երբ այսպիսի խռովայոյզ օրերու միջոցին՝ Արեւելք 150 տարուան չափ՝ ամէն գիտութիւն,

դրականութիւն ու արուեստ գրեթէ մահաքուն թմբրութեան մէջ նիրհած տեսնենք։

Վեցերորդպետութեանց հաստատման ժամանակ արեւմտեան զօրաբանակին զօրավարներուն ունեցած իշխանութիւնը՝ արեւելեան բանակին զօրավարներն ալ սկսած էին ունենալ. կ'ենթադրուի սակայն որ այսպիսի տուչութիւնք՝ ինչպէս Արեւմուտք, նմանապէս եւ Արեւելք՝ ինչպէս վերը տեսանք, ակամայ, պարագայից ստիպմամբը տրուած էին։

Հերակղի ատեն (610—640) կը սկսին պատերազմալից օրերն եւ սաստիկ միանգամայն սկիզբ կը դրուի զինուորական նորանոր կարգադրութեանց։ Կոստանդին Ծիրանածին պատմագիր կայսրն ալ բանակաթեմերուն ծագման ժամանակը Հերակղի կայսրութեան օրովը կը դնէ։ —

Կայսերական բանակն եօթը մեծ Հրամանատարութեանց կը բաժնուէր։

Ա. Արքայանիստ քաղքին եւ անոր շրջակայ գաւառներուն պաշտպանութեան համար՝ τὸ θεοφύλακτον βασιλικὸν Ὀψίκιον (Աստուածապահ կայսերական Ոփսիկիոն*). գնդին առաջնորդը կը կոչուէր κόμης τοῦ Ὀψικίου (Կոմս)։

* Զօրաբանակիս "Ոփսիկիոն„ կոչուելուն պատճառը՝ զօրաց ինքնակալին առջեւէն երթալու պաշտօնէն է առնուած, կ'ըսէ Կոստ. Ծիրանածին. Ὀψίκιον . . . ὅπερ σημαίνει τῇ τῶν Ἑλλήνων φωνῇ τοὺς προπορευομένους ἔμπροσθεν τοῦ βασιλέως ἐπὶ εὐταξίᾳ καὶ τιμῇ. Այս զօրաբանակը կը կազմէին Բիւթանացիք, Միւսիացիք, Դարդանացիք (= Տրովացիք): Թեմիս գլխաւոր քաղաքն էր՝ Նիկիա: (Համմտ. Cons. Porphyr. de Thematibus ed. Bonnae, p. 24.): — Գուցէ այսու կարելի ըլլայ մեկնել առ Ագաթանգեղեայ (Վենետ. 1835, էջ 641) յիշուած "Կարապետ արքայի„ տիտղոսին կամ պաշտամանն՝ ունեցած նշանակութիւնը: Ծ. Թ.

Բ. եւ Գ. Ընդդէմ Արաբացւոց՝ τὸ Ἀνατολικόν եւ τὸ Ἀρμενιάκων θέμα (Արեւելեան եւ Հայկական բանակաթեմ). այս զօրաբանակներուն հրամանատարը կ'անուանուէր՝ πατρίκιος καὶ στρατηγός (Պատրիկ եւ Հրամանատար):

Դ. Բուլղարաց արշաւանաց դէմ հաստատուեցաւ՝ τὸ θέμα τῆς Θράκης (Թրակացի բանակաթեմ), ասոր հրամանատարն եւս Պատրիկ եւ Հրամանատար կ'անուանուէր:

Ե. եւ Զ. Արեւմտեան զօրաբանակներուն կը հրամայէին Իտալիոյ եւ Ափրիկէի Պատրիկներն ու Վեցերորդապետները:

Է. Ծովային զինուորաց բանակաժողովոյն (χαραβισίανοι στρατιῶται) ծովակալը կը կոչուէր στρατηγὸς τῶν χαράβων (Հրամանատար նաւազօրուն): Այս վերջին բանակաթեմը յետոյ երկումասի բաժնուեցաւ. առաջինը՝ θέμα τῶν Κιβυραιωτῶν, հրամանատար՝ Դրունգար* (δρουγγάριος τῶν Κιβυραιωτῶν), երկրորդը՝ τὸ θέμα τῶν πλωιζομένων (Ծովային զօրաց բանակաժողով), հրամանատար՝ δρουγγάριος τῆς Δωδεκανήσου (Դրունգար Երկոտասան կղզեաց):

Ե.

Հրամանատարք:

Բիւզանդական ամբողջ զօրաբանակը հինգ գումարտակի կը բաժնուէր: ա. Ասիական (որուն

---

* „Δρουγγάριος“ անունը Բիւզանդացւոց առնն զինուորական շրջաններու մէջ գործածուող տիտղոս մըն էր, որ կը տրուէր ընդհանրապէս ծովային զօրաց հրամանատարներուն: Հմմտ. Anast. Bibl. Drungarius Duodecimae insulae. H. E. ed. Bon. p. 248. Հմմտ. նաեւ „Δρουγγάριος ὁ πρῶτος θαλάσσιος“. — Երկոտասան կղզիք՝ Յունաստանի հարաւ-արեւելեան կողմը գտնուող Կիւկղատեան կղզեաց խումբն է: Ժ. Թ.

կը վերաբերէր նաեւ Հայկականը), բ. Եւրոպական (Թրակիա), գ. Իտալական, դ. Ափրիկեան եւ ե. Ծովային:

ա. Ասիական:

1. Արեւելեան բանակաթեմ (θέμα Ἀνατολικόν). — Մաւրիկիոսի կայսրութեան ժամանակ Իտալիոյ եւ Ափրիկէի վերջերորդապետութիւններէն զատ՝ կար նաեւ զինուորական երկու մեծ Հրամանատարութիւն՝ Արեւելից եւ Եւրոպիոյ: Այս ժամանակներս Հայաստանի կառավարչին իշխանութիւնն եւս սկսած էր կամաց կամաց մեծնալ, այնպէս որ մինչեւ նոյն ժամանակ պարզապէս կոմս կամ Դուքս տիտղոսը կրող Հայաստանի վարիչները՝ Յուստինիանոսի կայսրութեան ժամանակ Ստրատելատի (στρατηλάτης) աստիճանին էին բարձրացած: Ἐστράτευσε δὲ ὑπ' αὐτὸν (ստրատելատի) Ἀρμενίων πλῆθος, ὡς εἰδότας τὰ μέρη τῆς Ἀρμενίας. ἔδωκε δὲ αὐτῷ καὶ ἀπὸ τῆς ἀνατολῆς στρατοῦ ἀριθμοὺς τέσσαρας. καὶ γέγονε μεγάλη φυλακὴ καὶ βοήθεια Ῥωμαίων. Theoph. 175, 7—10. Մաւրիկիոս կայսեր ժամանակ ալ Հայաստանի հրամանատարին իշխանութիւնը բացարձակ էր: Հերակլեանց տան իշխանութեան ատեն դեռ. այս զօրագլուխք գոյութիւն ունէին: Ճիշդ է Կոստ. Ծիրանածնի բանը, թէ Արեւելեան զօրուն իշխանին ունեցած իշխանութիւնը բոլորովին տարբեր էր աւելի վերջերը յերեւան եկած στρατηγὶς τῶν Ἀνατολικῶν ի ունեցածէն. "Ընդնուազել պետութեանն Հռոմայեցւոց՝ յերեսաց Հագարացւոցն ամբարշտաց, բաժանեցան (ազգքն արեւելից) ի թեմս ուրոյն ուրոյն զատ ի միմեանց, մինչ յառաջագոյն մինչեւ ի ժամանակս թագաւորութեանն Յուստինիանոսի եւ Մաւրիկեայ՝ ամենեքին ընդ միով իշխանութեամբ էին, որում վկայէ ինքն իսկ Պեղիսար, որ եւ եղեւ հրամանատար (μονοστρά-

τηγος) Արեւելից: Այլ իբրեւ սկսանէին Հագարացիք ի նեղ արկանել զՀռոմայեցիս եւ աւերել զքաղաքս նոցա եւ զգիւղս, ապա հարկ եղեւ հատանել մասն մի փոքրիկ յերկրէն եւ յանձն առնել զայն իշխանի ումեմն, զոր եւ անուանեալ կոչէին իշխան Արեւելից (᾽Ανατολικόν). Կոստ. Ծիրանածին, վասն Թեմ. 16: Այս զօրաբանակն առաջին անգամ 669ին յիշատակուած կը տեսնենք, եւ այն՝ պարզապէս պատահարաց բերմամբ: Նոյն թուականին Բիւզանդական պետութեան վրայ կ'իշխէր Կոստանդին Պոգոնատոս իւր Հերակղիոս ու Տիբերիոս եղբարցը հետ, սակայն Կոստանդին միայն գլուխը թագ կը կրէր, իսկ միւս երկուքը՝ "չէին ինչ արժանի." (οὐδεμίαν ἀξίαν εἶχον.) Ասոր վրայ Արեւելեան զօրաբանակը Կոստանդնի դէմ ապստամբելով՝ Քրիսուպոլիս կը քալէ եւ կը պահանջէ. Եթէ հաւատամք յԵրրորդութիւնն, զերեսին եւս պսակեսցուք (Οἱ δὲ τοῦ θέματος τῶν ᾽Ανατολικῶν ἦλθον ἐν Χρυσοπόλει λέγοντες ὅτι εἰς Τριάδα πιστεύομεν, τοὺς τρεῖς στέψομεν). Կայսրը զօրաց ապառնալիքէն զարհուրած, Պատրիկ մը (Թէոդոր) կը ղրկէ, որպէս զի զօրքը խաղաղցընէ. իսկ զօրաց աւագանին նենգութեամբ կը սպաննէ, իւր երկու եղբարքն ալ կ'անդամատէ:

Բոլոր բանակաթեմերու մէջէն ամենէն ընդարձակն Արեւելեանն էր, որ իւր մէջ կը բովանդակէր Դիոկղետիանեան նահանգները՝ Ասիա եւ Լիւդիա, Կարիոյ ինչ ինչ մասերը, Պակատիանեան Փռիւգիա, Փրկաւէտն Փռիւգիա (գրեթէ ամբողջ) Լիկաւոնիա, Պիսիդիա, Կապադովկիա Բ. եւ Իսաւրիա: Թեմին հրամանատարին ունեցած պատիւն ամենամեծն էր, եւ այն — որչափ կ'երեւայ՝ սկզբէն ի վեր: Իտալիոյ եւ Ափրիկէի վեցերորդապետներուն պէս ինքն ալ միշտ "Պատրիկ" պատուանուամբ կը յորջորջուէր: Արեւելեան զօրաբանակին

մեղի ծանօթ առաջին հրամանատարն է՝ Ղեւոնդիոս, որ յետոյ կայսր եղաւ (695—698)։

3. Ոփսիկեան բանակաթեմ (θέμα Ὀψίκιον). — Յուստինիանոս Բ. Արեւելեան բանակաթեմէն յառաջ կը յիշատակէ արքայական Ոփսիկիոնը (հմմտ. Schlumberger, Sigillographie de l'empire byzantin. էջ 296). Այս զօրաբանակին անուան առաջին անգամ կը հանդիպինք 688ին։ Անոր հրամանատարն եւս Պատրիկ կ'անուանուէր։ Ոփսիկիոն բանակաժողովն իւր մէջ կը բովանդակէր Բիւթանիա, Հոնորիա, Պափղագոնիա, Հելլեսպոնտեայ մեծ մասն ու Ա. Փռիւգիա։ Արքայանիստ քաղաքին թիկնապահաց գունդերը միշտ այս զօրաբանակէն կ'առնուէին։

4. Հայկական բանակաթեմ (τὸ τῶν Ἀρμενιάκων θέμα). — Հայկական բանակաթեմին սկիզբը մինչեւ Յուստինիանոս կը հասնի։ Վերջնոյս կառավարութեան ժամանակ պատահած նշանաւոր դէպքերէն մին է՝ Հայաստան ըրած բարենորոգութիւնքը։ Հռոմ չէր կրնար աչք գոցել ուղղափառ Թէոդոսի ակար ու թոյլ քաղաքականութեանը, որ Կոստանդիանոսի ժամանակներէն ի վեր Հռոմայ հետ սերտ կապուած քրիստոնեայ մեծ ազգ մը՝ անհաւատից ձեռքը թողուցած էր։ Թէոդոս փոքր շատ խոհեմութեամբ պատուիրած էր իւր Անատոլիս կուսակալին, որ հռոմէական սահմանները դիմող Թարգմանչաց Սահակայ եւ Մեսրոպայ ամենայն եղանակաւ նպաստամատոյց ըլլայ։ Յունական մատենագրութեան թարգմանութեան բուռն հոսանքը՝ Հայոց ընդ Յոյնս ունեցած կրօնակցութիւնը հաստատ բռնեց։ Այս ճարտար հնարքը մըն էր, որուն միջոցաւ Պարսիկք երկուքուկէս դարէ ի վեր իրենց իշխանութեան տակ նուաճած Հայաստանի գաւառները հանդիստ չկրցան վայելել։

Յուստինիանոս իւր մտադրութիւնը գլխաւորաբար պետութեան արեւելեան սահմաններուն

վրայ ուղղած էր։ Ինչը 528ին Հայաստանի սահմանագլխոց վրայի փոքրիկ հրամանատարութիւնները բարձաւ եւ Ծիտաս (Τζίτας) անուն քաջամարտիկ զօրավարը (ἄνδρα πολεμικὸν καὶ ἱκανώτατον) իբր Ստրատելատ (στρατηλάτης) Հայաստան զրկելով՝ վերջ տուաւ մինչեւ նոյն ժամանակ ի գոյութեան եղող դուքսերու եւ կոմսերու գրութեան։ Հայք, որոնք խուռն բազմութեամբ սկսած էին զինուորիլ Ստրատելատի հրամանին տակ, այս ժամանակէն սկսեալ մեծամեծ ծառայութիւններ մատուցին Բիւզանդական պետութեան։ Ցետագայ դարերու Բիւզանդական զօրաբանակներու տաղանդաւոր ու հանճարեղ պաշտօնակալներն ու զօրավարները կամ Հայ են եւ կամ վրացի։ Բարսեղով (867—886) Հայ ցեղ մը — ըստ Փոտայ բամծին՝ Արշակունի կամ Պահլաւունի՝ Տրդատայ սերնդէն — Բիւզանդական գահը կը բազմի։ — Ծիտասայ հրամանին տակ եղող Հայաստանի սահմանապահ զօրաց գունդը մեծաւ մասամբ քաջավարժ Հայ նախարարներէ ու ստորին ազնուականներէ (Ազատորեար) կը բաղկանար։ Ըստ առաջարկութեան Ծիտասայ՝ Յուստինիանոս 536ին իւր նշանաւոր երեսունումէկերորդ օրէնսդրական Հրովարտակը (Novelle) տուաւ, որուն համաձայն՝ չորս Հայոց վարչական կազմակերպութեամբը, սահմանագաւառները նոր — սակայն հետեւութիւնները ծանր կարգի վերածուեցան։ Յուստինիանոսի սկսած քաղաքականութիւնը յաջորդ կայսրներէ եւս շարունակուեցաւ։ Երբ տեսանք թէ Հայաստանի Զօրավարը (στρατηγός) Մաւրիկեայ կառավարութեան ատեն հանդիսապատիւ էր Արեւելից ու Եւրոպիոյ երկու մեծ հրամանատարութեանց Հրամանատարներուն։

Հայկական բանակաթեմին կազմակերպուելու ժամանակն է՝ Է. դարը։ Ճիշդ է Կոստ. Ծիրանածին կայսեր Հայկական թեմին ծագման մասին

բամբր, Թէեւ կռահելով. „Թեմն, որ անուանեալ կոչի Հայկական՝ չունի ինչ սեպհական անուն. զի զայս անուն ընկալաւ նա ի դրացւոյն եւ ի սահմանակցէ իւրմէ ի Հայոց: Նա թէ ինձ պատշաճ թուի ասել, եթէ առ Հերակլեաւ արքայիւ եւ կամ ի յետին ժամանակս զյորջորջումն զայս ընկալաւ.„[1] Վասն Թեմ. 17,19—18,3: Սակայն ընդ հակառակն բոլորովին սխալ է իւր տուած հետեւեալ տեղեկութիւնը. „Յառաջին ժամանակին կամ առ Յուստինիանոսիւ եւ կամ առ այլով ումեմք արքայիւ, Գամիրք յերիս անձնիւր մասունս էին բաժանեալ: Միջին կողմն աշխարհին անուանէր Քարսիանոն՝ յիշխանէ ումեմնէ Քարսիոն կոչեցելոյ — որ ընծայեցոյց զանձն երեւելի ի պատերազմունս մղեալս ընդդէմ Պարսից — եւ յայս սակս իսկ աշխարհն այն անց ի կարգս թեմից եւ զօրավարութեան, մինչեւ ցայսօր ժամանակի: Ստորին մասն աշխարհին (Գամրաց), որ հայի ի ծովն՝ կոչէր Հայկական, վասն կից յաշխարհն Հայոց լինելոյ. իսկ վերնակողմանն՝ լեալ առ երի Լիկաւոնացւոց եւ Տաւրոսի, եդաւ անուն Փոքր Գամիրք, որ եւ է — որպէս ի վեր անդր տեսաք — ի կարգս թեմից.[2]„

---

[1] Τὸ θέμα τὸ καλούμενον Ἀρμενιάκων, οὐ κύριον ἔχει τὸ ὄνομα, οὐδὲ ἀρχαία τίς ἐστιν ἡ τούτου προσηγορία, ἀλλὰ ἀπὸ τῶν ὁμορούντων καὶ συνοικούντων Ἀρμενίων τὴν προσηγορίαν ἐκτήσατο. δοκῶ δὲ εἰπεῖν ὅτι ἐπὶ Ἡρακλείου τοῦ βασιλέως καὶ τῶν κάτω χρόνων τὴν τοιαύτην προσηγορίαν ἐκληρονόμησεν.

[2] Ἐπὶ δὲ τῶν ἄνω χρόνων εἴτε Ἰουστινιανοῦ εἴτε ἄλλου τινὸς τῶν βασιλέων τμηθείσης τῆς Καππαδοκίας εἰς τρία μέρη τὸ μεν μεσόγαιον ἐκλήθη Χαρσιανὸν ἀπὸ Χαρσίου τινὸς ἄρχοντος τῷ τότε καιρῷ εὐδοκιμήσαντος ἐν τῷ πρὸς Πέρσας πολέμῳ, καὶ διὰ τοῦτο εἰς θέματος τάξιν καὶ στρατηγίδα μέχρι τοῦ τῦν ἐχρημάτισε. τὸ δὲ κάτω καὶ πρὸς θάλλασσαν ἐκλήθη Ἀρμενιάκον διὰ τὸ εἶναι

Վասն Թեմ. 20,2—10։ Այս կարգադրութիւններէն մին կամ միւսը Յուստինիանոսի ժամանակն եղած համարելու ամենեւին բանաւոր պատճառ մը չկայ, այլ լոկ ձրի ենթադրութիւն է։ Քարսիանոն թեմը, որ աւելի ետքերն էր հաստատուած, Հայկական թեմին մէկ մասն էր. իսկ Փոքր Գամիրք (Գամիրք Բ.) Արեւելեան բանակաթեմին կը վերաբերէր։ Ուստի եւ Կապադովկիոյ վերոյիշեալ երեք վիճակները՝ զորոնք Յուստինիանոս կամ յետագայ կայսրներէն մին՝ փոքրիկ վաշտերու վերածած էր, երբեք մեծ զօրաբանակ կազմած չէին։

Թեմերու ծագման մասին ցարդ եղած ուսումնասիրութեանց մէջ՝ ուսեալ կայսեր վարկպարազի գրած այս մասերին իբր ամենայն մասամբ վստահելի ու ստուգապատում աղբիւր գործածուիլը՝ շատ զարմանալի է։

Հայկական բանակաթեմն իւր մէջը կը բովանդակէր յունական ու Պողեմոնեան Պոնտոս, Ա. եւ Բ. Հայք (Գ. Հայք մեծաւ մասամբ արաբական իշխանութեան տակն էր) եւ Ա. Գամիրք։ Հայագունդ գումարտակին զօրավարը պետական բանակին բարձրագոյն աւագանւոյն կը պատկանէր պատուոյ աստիճանովն եւ Արեւելեան գումարտակին զօրավարին պէս ինքն ալ միշտ Պատրիկ տիտղոսը կը կրէր։ Հմմտ. Թէոփ. *Νικήφορον τὸν πατρίκιον καὶ στρατηγὸν (τῶν Ἀρμενιάκων)* 722,2. *τὸν στρατηγὸν αὐτῶν Θεόδωρον καὶ πατρίκιον τὸν Καμουλιανόν*. անդ 726,6։

Ուստի Յունաց իշխանութեան տակ եղող ասիական նահանգները բաժնուած էին երեք մեծ զօրավարութեանց.

---

*αὐτὸ πλησιόχωρον τῶν Ἀρμενίων, τὸ δὲ ἄνωθεν καὶ ὁμοροῦν τοῖς Λυκάοσι καὶ τῷ Ταύρῳ Καππαδοκία μικρά, ἡ νῦν, ὡς ἔφαμεν, εἰς θέματος ὄνομα χρηματίζουσα.*

Ա. Ասիաբնակ անձնապահաց արքայագունդ (Ոփսիկիոն).

Բ. Արեւելեան սահմանաց զօրաբաժին (Արեւելեան բանակաթեմ), եւ

Գ. Հայաստանի սահմանապահ զօրագունդ (Հայկական բանակաթեմ)։

բ. Եւրոպա։

Եւրոպիոյ գումարտակը (Division) կը բաղկանար միայն Թրակեան բանակաթեմէ, որ իր մէջն ունէր Դիոկղետիանեան նահանգները՝ Եւրոպա, Հեմիմոնտեայ ու Ռոդոպի ինչ ինչ մասերը, Թրակիոյ մեծագոյն մասը, ստորին Սկիւթիա եւ Միւսիա։ Հերակղեայ գահակալութեամբը թէեւ Աւարաց՝ Բիւզանդացւոց վրայ ըրած յարձակմունքը դադրած էին, սակայն նուազ վտանգ չէին սպառնար պետութեան Բուլղարները, որոնք ստորին Դանուբին եզերքէն անդադար յառաջ կը քալէին դէպ ի Հեմոս թերակղզին։ Այս սպառնացող վտանգին առջեւն առնելու համար անհրաժեշտ էր Թրակիոյ սահմաններուն վրայ եւս բանակաթեմ մ'ունենալ, որով միայն կարելի էր Մայրաքաղաքը հիւսիսային թշնամիներէն պաշտպանել։ — Եւրոպիոյ գումարտակին կը վերաբերէր նաեւ Իլիւրիոյ կուսակալութիւնը։

գ. Արեւմուտք։

Ա. Իտալական բանակաթեմ (θέμα Ἰταλικόν). Իտալիոյ զօրաբանակը բաժնուած էր երկու գնդի՝ Հռոմէական ու Ռաւէննական։ Այս գնդերուն ընդհանուր հրամանատարութեան պաշտօնը կը վարէր Իտալիոյ Վեցերորդապետը, որ միանգամայն Պատրիկ տիտղոսը կը կրէր իւր վրան։ Յուստինիանոսի մահուընէն ետքը Սիկիլիա եւս Իտալիոյ մասը համարուեցաւ, եւ գրեթէ ամբողջ Է՛ դար զինուորական յարաբերութեանց մէջ — առ ի չգոյէ Պատրիկի,

իտալիոյ Վեցերորդապետին իշխանութեան տակն էր։ Այս է պատճառը, որ երբ 668ին Մժէժ Հայազգի զօրավարին հրամանատարութեամբ՝ Սիկիլիա ընդդէմ Սարակինոսաց զրկուած Արեւելեան գումարտակը՝ իւր հրամանատարը Սիկիլիոյ գահը կը բազմեցնէ, իտալական ու ափրիկական գնդերը զինքը գահընկէց ընելու համար Սիկիլիա կը յարձակին։ Առաջին անգամ Ը. դարուն Սիկիլիա Պատրկի մը տակ իւր սեպհական կամ տեղային գունդն ունեցաւ, դուցէ թերեւս Սարակինոսաց յարձակմանց դէմ կղզին պաշտպանելու համար։

Բ. Ափրիկեան բանակաթեմ (Exercitus Africanus). — Կարքեդոնի առումէն ետքը (698ին) ափրիկական Վեցերորդպետութեան կենդրոնական բանակետղը Սեպտէմ (Սէուտա) էր փոխադրուած, որուն անուամբը գունդն ալ Սեպտէնեան (Septensiani) անուանուեցաւ։ Ափրիկէի Վեցերորդապետին ունեցած իշխանութիւնը կը տարածուէր Ափրիկէի մնացեալ գաւառներուն, Բաղէարեան կղզեաց ու Սարդինիոյ գնդերուն վրայ։ Սպանիա Արաբացիներէն նուաճուելով՝ Սեպտէմ եւս Բիւզանդացւոց ձեռքէն յափշտակուեցաւ. սակայն Արեւելեան Հռոմէական պետութիւնը դեռ 150 տարի Սիկիլիան իւր իշխանութեան տակ կրցաւ պահել։ Ափրիկէի Վեցերորդպետութեան այս վերջին մնացորդը՝ Միքայէլ Բ.ի (820—829) եւ Թէոփիլոսի (829—842) կայսրութեան ժամանակ դարձեալ Վեցերորդապետի մը ձեռօք կը կառավարուէր, որ իւր նախկին "Վեցերորդապետ Ափրիկեայ„ անունն իբր տիտղոս իւր վրան կը կրէր։

Գ. Ծովային բանակաթեմ։

Զ. դարը յունական նաւազօրուն դիւցազանց դարը ճանչցուած է։ Մուավիէ դամասկացին, որ զԱլի Խալիֆայութենէ վար առած էր, ամէն ջանք ի գործ դրաւ, որպէս զի Արեւելեան Հռոմէա-

կան պետութեան մայրաքաղաքը ձեռք ձգէ, գիտնալով որ, այն ժամանակ միայն խոլամութիւնն իւր բարձրութեան գագաթնակէտին պիտի հասնի, երբ երկնային իմաստութեան վրայէն խաչը վար կ'առնուի: Առ այս օգնական էին իրեն՝ Ասորիք, Եգիպտոս եւ Պենտապոլիս, որոնք երբեմն յունական եպարքոսութիւններ էին: Այսու ամենայնիւ Արաբացւոց ամէն փորձն ապարդիւն մնաց: Կալլինիկոս Հեղիոպոլսեցի ճարտարապետը՝ իւր հնարած "յունական կրակովը„ Հագարացւոց նաւատորմիղը Կ.Պոլսոյ պարսպաց առջեւ հրոյ ճարակ տալով ոչնչացուց: Պետութիւնը բնականաբար նաւազօրուն ցոյց տուած այս դիւցազն գործքը չէր կրնար անվարձ թողուլ. իրօք ալ այն ժամանակէն սկսեալ ծովային զօրքը, բայց գլխաւորաբար պաշտօնականները, պետութեան մէջ ազդեցիկ դիրք սկսած էին ունենալ: Նաւատորմղին ընդհանուր հրամանատարներն եւս շատ անգամ Պատրիկ տիտղոսով կը յորջորջուէին, սակայն ոչ միշտ, այնպէս որ ծովակալ մ'իւր աստիճանին զօրութեամբը միանգամայն Պատրիկ տիտղոսը չէր կրեր վրան, ինչպէս միւս վեց բանակաթեմերու հրամանատարները կամ ընդհանուր զօրավարները, զորոնք վերը տեսանք:

Ծովային թեմը Պամփիւլիոյ, Լիւկիոյ, Պիսիդիոյ մէկ մասին եւ հարաւային Կարիոյ վրայ կը տարածուէր:

Մինչեւ հոս բուռածներն համառօտ ի մի ամփոփելով, Յուստինիանոս Բ. ի ժամանակ, Է. դարուն վերջերը՝ բանակաթեմերու հրամանատարներուն ունեցած աստիճանն ու յորջորջումը հետեւեալն էր.

1. Կոմս Ոփսիկիոնի — Պատրիկ.

2. Զօրավար Արեւելեան բանակին — Պատրիկ.

3. Զօրավար Հայկական բանակին — Պատրիկ.

4. Զօրավար Թրակեան բանակին — Պատրիկ.

5. Վեցերորդապետ Իտալիոյ — Պատրիկ.

6. Վեցերորդապետ Ափրիկէի — Պատրիկ.

7. Ծովակալ նաւազօրուն (στρατηγὸς τῶν Καραβισιάνων).

## Գ.

## Բիւզանդական պետութեան քաղաքային վարչութիւնը Է՞ դարուն մէջ։

Տեսանք թէ Է՞ դարուն կայսրութեան բոլոր երկիրներուն վրայ տարածուած բանակաթեմերու դրութիւնը՝ զուտ զինուորական կազմակերպութիւն ըլլալով, քաղաքական վարչութեան հետ ամենեւին առընչութիւն չունէր։ Իսկ քաղաքական վարչութեան մէջ դիոկղետիանեան, յուստինիանեան եւ յետյուստիանեան նախնի կուսակալները դեռ իրենց պաշտօնն անվրդով կը վարէին։ Ասի յայտնի կ'երեւայ Զ՞ տիեզերական (680) եւ Հինգվեցեան (693) ժողովոց մասնակցողներու ու ստորագրողներու ցանկերէն։

Այս ցանկերու համաձայն՝ Ասիա հետեւեալ քաղաքային գաւառներու կը բաժնուէր. Կապադովկիա Ա., Ասիա, Գաղատիա Ա., Հելլեսպոնտոս, Լիւդիա, Բիւթանիա, Պամփիւլիա, Յունական Պոնտոս, Կապադովկիա Բ., Պափղագոնիա, Հոնորիաս, Պոլեմոնեան Պոնտոս, Գաղատիա Բ., Լիւկիա, Կարիա, Պակատիանեան Փռիւգիա, Փրկաւէտն Փռիւգիա, Լիւկաոնիա, Պիսիդիա, Նեսոն, Ա. եւ Բ. Հայք, Մեծ Հայք, Դ. Յուստինիանիա։ Պետութեան կը վերաբերէին դարձեալ հետեւեալ թեմերը. Իսաւրիա, Ա. եւ Բ. Կիլիկիա, մասամբ իւիք նաեւ Կիպրոս, թէեւ ոչ միշտ, եւ Փասիսի աւատական իշխանութիւնը։

Վերոյիշեալ ժողովոց արձանագրութեանց մէջ դժբախտաբար եպիսկոպոսք իրենց անուան

հետ միասին նաեւ եկեղեցական գաւառին անունը չեն ստորագրած։ Ասոր իբր օրինակ կրնանք յառաջ բերել Հայոց եկեղեցական թեմերը։ Եկեղեցական աշխարհագրութեան միայն երկու հայ նահանգ ծանօթ է, որոնք արդէն Յուստինիանոսէ յառաջ գոյութիւն ունէին։ Ընդհակառակն ժողովոց ստորագրութիւնները մեր առջեւ կը դնեն՝ Մաւրիկեայ ատեն կարգի դրուած նահանգաց քաղաքական բաժանումը։ Այս փոփոխութեանց մասին պայծառ գաղափար կու տայ հետեւեալ տախտակը.

| Յառաջ քան զՅուստինիանոս | Յուստինիանոսի 536ի հրովարտակը | Յետ Յուստինիանոսի |
| --- | --- | --- |
| Ա. Հայք | Ներքին Հայք (ἡ ἐνδοτάτη Ἀρμενία.) | Մեծ Հայք |
| Սեբաստիա — Սեբաստուպոլիս — Նիկոպոլիս — Սատաղ — Կողոնիա։ Բ. Հայք Մելիտինէ — Արկա — Կոկիսոն — Արաբիսոս — Արիարաթէ — Կումանա։ | Յուստինիանուպոլիս (Բասեան - Դեւոնդուպոլիս — Ա. Հայքէն՝ Սատաղ — Նիկոպոլիս — Կողոնիա։ Պոլեմ. Պոնտոսէն՝ Տրապիզոն — Կերասոս։ | Տրապիզոն — Յուստինիանուպոլիս (Եկեղեաց գաւառ) — Կողոնիա — Նիկոպոլիս — Սատաղ † Կերասոս։ |
| Ներքին Հայք Բասեան (Դեւոնդուպոլիս)։ Նախարարութիւնք* (Satrapiae) | Բ. Հայք Սեբաստիա — Սեբաստուպոլիս. Պոլեմեան Պոնտոսէ՝ Կոմանա. | Բ. Հայք Սեբաստիա — Հերակղուպոլիս — † Բերիսա — † Սեբաստուպոլիս։ |

---

* «Նախարարութիւնք» անուամբ կ'իմացուին Արշակունեաց արեւմտեան մասին անկումէն ետքը՝ Մեծ Հայոց յունական բաժնին վրայ գտնուող հինգ հայ Նախարարութիւնները, որոնց սահմանը՝ ըստ Պրո-

4. Զօրավար Թրակեան բանակին — Պատրիկ.

5. Վեցերորդապետ Իտալիոյ — Պատրիկ.

6. Վեցերորդապետ Ափրիկէի — Պատրիկ.

7. Ծովակալ Նաւազօրուն (στρατηγὸς τῶν Καραβισιάνων).

## Զ.

## Բիւզանդական պետութեան քաղաքային վարչութիւնը Է՞ դարուն մէջ:

Տեսանք թէ Է՞ դարուն կայսրութեան բոլոր երկիրներուն վրայ տարածուած բանակաթեմերու դրութիւնը՝ զուտ զինուորական կազմակերպութիւն ըլլալով, քաղաքական վարչութեան հետ ամենեւին առընչութիւն չունէր: Իսկ քաղաքական վարչութեան մէջ դիոկղետիանեան, յուստինիանեան եւ յետյուստինիանեան նախնի կուսակալները դեռ իրենց պաշտօնն անվրդով կը վարէին: Ասի յայտնի կ'երեւայ Զ՞ տիեզերական (680) եւ Հինգվեցեան (693) ժողովոց մասնակցողներու ու ստորագրողներու ցանկերէն:

Այս ցանկերու համաձայն՝ Ասիա հետեւեալ քաղաքային գաւառներու կը բաժնուէր. Կապադովկիա Ա., Ասիա, Գաղատիա Ա., Հելլեսպոնտոս, Լիւդիա, Բիւթանիա, Պամփիւլիա, Յունական Պոնտոս, Կապադովկիա Բ., Պափղագոնիա, Հոնորիաս, Պողեմոնեան Պոնտոս, Գաղատիա Բ., Լիւկիա, Կարիա, Պակատիանեան Փռիւգիա, Փրկաւէտն Փռիւգիա, Լիւկաոնիա, Պիսիդիա, Նեաոն, Ա. եւ Բ. Հայք, Մեծ Հայք, Դ. Յուստինիանիա: Պետութեան կը վերաբերէին դարձեալ հետեւեալ թեմերը. Իսաւրիա, Ա. եւ Բ. Կիլիկիա, մասամբ իւիք նաեւ Կիպրոս, թէեւ ոչ միշտ, եւ փախիխ աւատական իշխանութիւնը:

Վերոյիշեալ ժողովոց արձանագրութեանց մէջ դժբախտաբար եպիսկոպոսք իրենց անուան

հետ միասին նաեւ եկեղեցական գաւառին անունը չեն ստորագրած։ Ասոր իբր օրինակ կրնանք յառաջ բերել Հայոց եկեղեցական թեմերը։ Եկեղեցական աշխարհագրութեան միայն երկու հայ նահանգ ծանօթ է, որոնք արդէն Յուստինիանոսէ յառաջ գոյութիւն ունէին։ Ընդհակառակն ժողովոց ստորագրութիւնները մեր առջեւ կը դնեն՝ Մաւրիկեայ առեն կարգի դրուած նահանգաց քաղաքական բաժանումը։ Այս փոփոխութեանց մասին պայծառ գաղափար կու տայ հետեւեալ տախտակը.

| Յառաջ քան զՅուստինիանոս | Յուստինիանոսի 536ի հրովարտակը | Յետ Յուստինիանոսի |
|---|---|---|
| Ա. Հայք | Ներքին Հայք (ἡ ἐνδοτάτη Ἀρμενία.) | Մեծ Հայք |
| Սեբաստիա — Սեբաստուպոլիս — Նիկոպոլիս — Սատաղ — Կողոնիա։<br>Բ. Հայք<br>Մելիտինէ — Արկա — Կոկիսոն — Արաբիսոս — Արիարաթէ — Կումանա։ | Յուստինիանուպոլիս (Բասեան - Լեւոնդուպոլիս — Ա. Հայքէն՝ Սատաղ — Նիկոպոլիս — Կողոնիա։ Պողեմ. Պոնտոսէն՝ Տրապիզոն — Կերասոս։ | Տրապիզոն — Յուստինիանուպոլիս (Եկեղեաց գաւառ) — Կողոնիա — Նիկոպոլիս — Սատաղ † Կերասոս։ |
| Ներքին Հայք<br>Բասեան (Լեւոնդուպոլիս)։<br>Նախարարութիւնք* (Satrapiae) | Բ. Հայք<br>Սեբաստիա — Սեբաստուպոլիս. Պողեմեան Պոնտոսէ՝ Կոմանա. | Բ. Հայք<br>Սեբաստիա — Հերակղուպոլիս — † Բերիսա — † Սեբաստուպոլիս։ |

---

* “Նախարարութիւնք„ անուամբ կ՚իմացուին Արշակունեաց արեւմտեան մասին անկումէն ետքը՝ Մեծ Հայոց յունական բաժնին վրայ գտնուող հինգ հայ Նախարարութիւնները, որոնց սահմանը՝ ըստ Պրո-

կոպեայ, Եփրատ գետէն մինչեւ Ամիդ քաղաքը կը հասնէր. որ է ըսել՝ Ծոփաց աշխարհ կամ Չորրորդ Հայք: Այս Նախարարութեանց ենք եւ ինչպէս ծագած ըլլալը մեզի անծանօթ է: Հ. Յովս. Գաթըրճեանի ըրած ուղիղ ժամանակագրութեան հետեւելով (Պատմ. Տիեզ. Բ. 520) 387էն յառաջ Թէոդոս Ա.ոյն ատեն արդէն Հայաստանի մէկ մասը (Ծոփք) Հռոմայեցւոց իշխանութեան տակն էր "իբրեւ նահանգ ընդ սեպհական նախարարօք:" – Մենք կը կարծենք թէ Ծոփաց այս հինգ Նախարարութիւնքը քաղաքական իրաց մէջ ո՛չ թէ Հայաստանի յունական մասին կուսակալէն (որուն Նիստը՝ ըստ Հ. Յովս. Գաթըրճեանի հաւանականագոյնս Կարին էր) կախում ունէին, այլ ուղղակի կայսրէն: Մովս. Խորենացի Գ. գլ. ԽԶ. Արշակ Գ.ի Երեւել դաշտի ճակատէն ետքը անոր ղի մեռնիլը պատմելէն ետքը՝ իրան կը յաւելու. "Ոչ կացուցին Յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր, այլ առաջնորդէր նախարարացն այնր կողմանն քաջն Գազաւոն. եւ աշխարհին իւրեանց մասին կացուցին Յոյնք կոմէսս:" Հոս մանաւոր մտադրութեան արժանի է հայ պատմագրին բացատրութեան կերպը, որով յայտնի կը զանազանէ՝ 1. Նախարարք այնր կողմանն (յամենայն դէպս՝ Ծոփաց) եւ 2. աշխարհին իւրեանց մասին: Թագաւորութեան անկումէն ետքը Հայաստան Կոմս մը ղրկուելուն մասին Խորենացւոյ հետ կը համաձայնի նաեւ Պրոկոպիոս, երբ կ'ըսէ. "Յայնմ ժամանակէ հետէ (այս է՝ Արշակայ Գ.ի մահուընէն ետքը) միշտ զո՛ ոք եւ երբ կայսր կամէր՝ կացուցանէր ի վերայ Հայոց. զսա եւ առ մեզ կոչէին կոմս:" Նոյն պատմագիրը քանի մը տող վար՝ Յուստինիանոս Ա.ոյն Հայաստանի սահմանները Բարբարոս ազգաց յարձակմունքէն ապահովելու համար Մեծ Հայք ըրած զինուորական կարգադրութիւնները պատմելէն ետքը, կ'ըսէ. "Իսկ ի միւս Հայս (τῇ δὲ ἄλλῃ Ἀρμενίᾳ) որ յԵփրատայ մինչեւ ցքաղաքն Ամիդ ձգեալ տարածանէր, իշխէին հինգ հայ սատրապք, որք պայազատութեամբն օրինօք ժառանգէին զտանուտէրութիւնն:... Ապաքէն արքային Հայոց եւ սատրապաց ոչ էր օրէն վարել ի պատերազմունս լեգէոնս Հռոմայեցիս, այլ զամենայն պարտ էր նոցա անձամբ յանձնել վճարել Ապա ուրեմն առ Զենոնիւ կայսերաւ 474—91) իբրեւ

| | | |
|---|---|---|
| Մեծ Ծոփք — | Յունական Պոն- | Ա. Հայք[1] |
| Հանձիթ—Ծոփք | տոսէ՝ Բերիա։ | Մ ե ղ ի տ ի ն է |
| Շահունեաց — | | — Արկա — Կո- |

առաջնորդութեամբն Ղեւոնդեայ եւ Իդղեայ Նախարարք ոմանք ի վսեր եկեալ ապստամբեցին եւ յետս կացին ի Յունաց, յետ ընդ ձեռամբ զնոսա կայսեր նուաճելոյ, զմին ի Նախարարաց անտի եւեթ, որոյ էր տանուտէրութիւն փոքրիկ ի վերայ գաւառին Բալահովտայ (ἐν χώρῃ τῇ Βελαβιτίνῃ) եթող ի պաշտաման այնմիկ յառաջնոյ. իսկ զայլսն արկեալ յիշխանութենէն, տայր հրաման մի՛ այլ եւս Նախարարացն ժառանգութեամբ ունել զտանուտէրութիւնն, այլ զոր ընտրեսցէ կայսրն։ Թէպէտ եւ այսպէս հաւասարեցին Նախարարք Հայոց ընդ այլ պաշտօնեայս Հռոմայեցւոց, սակայն որ շուրջ զնոքօք լեզէոնքն էին, ո՛չ եթէ ի Յունաց ինչ անտի էին, այլ՝ ըստ հին սովորութեան իւրեանց՝ ի Հայոց։ Եւ յայս սակս իսկ ի մարտս պատերազմի զթշնամեաց ըստ արժանն դէմ ունել ո՛չ զօրէին։ Կշռեալ զայս ամենայն Յուստինիանու Ա. եբարձ ամենեւին իսկ զՆախարարութիւնսն զայնոսիկ ի միջոյ եւ փոխանակ Նախարարաց՝ եդ կացոյց ի վերայ նոցա իշխանս ոմանս հռոմայեցիս, զորս նոքա "Դուքս„ անուանեալ կարդան եւ ընդ հայազունդ զօրս խառնեաց եւ հռոմայեցի լեզէոնս ի պահ զգուշութեան սահմանացն պետութեան։„ Պրոկ. վասն շին. Յուստ. Գ. գլ. Ա.։ Հմմտ. յայսմ մասին նաեւ Հ. Յովս. Գաթըրճեանի կարծիքը, որ կ՚ըսէ. "Զառաջինն Նախարարք առանց իրիք ազդեցութեան Հռոմայեցւոցն՝ ըստ սովորական կարգի պայազատութեանն յաջորդէին զտանուտէրութիւնն (Տիեզ. Պատմ. Բ. 518, 520)։

Ծ. Թ.

[1] Եկեղեցական աշխարհագրութիւնն այնչափ միայն քաղաքական բաժանմանց կը հետեւի, որ զՄեղիտինէ եկեղեցական գաւառը՝ իբր Ա. Հայք եւ զՍեբաստիա՝ իբր Բ. Հայք կը նշանակէ։ Սակայն մետրապոլիտներու թեմերը ոչ թէ Ե-դ դարու, այլ կոստանդին-թէոդոսեան ժամանակի քաղաքական բաժանմանց կը համապատասխանէին, ինչպէս որ արդէն Յուստինիանոս որոշած էր, թէ իւր Հայաստան ըրած քաղաքական բաժանումները՝ եկեղեցական թեմերու բաժանմանց համար չեն արժեր։

Հաշտեանք — Պաղնատուն։

Դ․ Հայք Մեղիտինէ — Արկա — Արաբիսս — Արիարաթէ — Կոմանա Գամրաց — Կոկիսոն։

Դ․ Հայք Մարտիրոսացքղ․ — Կթառիճ (Kitharizon) — Մեծ Ծոփք — Հանձիթ — Ծոփք Շահունեաց — Հաշտեանք — Պաղնատուն։

կիսոն † Կոմանա։

Դ․ Հայք (Յուստինիանա)

Մարտիրոսացքղ․ — Դարա — Արծն — Մեծ Ծոփք — Կղիսուրա Բաղաղացւոց (Kleisura Balaleison).

Դ․ Յուստինիանա (Դ․ Հայք միւս)

Դաղիմա — Արշամունշատ — Կթառիճ — Ծոփք Շահունեաց — Հանձիթ — Դեգիք (Digisene) Կարին — Բալահովիտ (Bilabitene) Բալու (Baline) — Խորձեան — Հաշտեանք։

Ներքին Հայք Տայք։

Ստորին Հայք Դվին (Tibion)։

Զ․ տիեզերական եւ Հինգվեցեան ժողովոց ստորագրութիւններէն յայտնի կը տեսնուի, որ եպիսկոպոսք ոչ թէ ըստ իրենց եկեղեցական թեմերուն, այլ ըստ քաղաքական բաժանմանց ստորագրած են՝ Հայք Առաջին, Երկրորդ, Մեծ, Յուստինիանա եւն։ Վերոյիշեալ երկու ժողովոց ստորագրութեանց ցանկերը Մանսիի քով միշտ շատ վստահելի չըլլալուն, առաջնոյն ցանկը Տաւրինեան LXVII c. III 10 (Nova coll. B II 9) Վատիկանեան՝ թիւ 834 եւ 1180 ձեռագրաց հետ

համեմատեցի։ Հինգվեցեան ժողովոյն ստորագրութեանց ցանկը համեմատելու համար ի մէջ այլոց առջեւս ունէի Պարիսեան Suppl. Grec թիւ 1085 սքանչելի ձեռագիրը։ Ձեռագրաց այս համեմատութեամբն եպիսկոպոսանիստ տեղերու անուանց մասին կատարեալ ապահովութիւն ստացայ։ Առջեւն խաչանիշ նշանակուած քաղաքներուն այս կամ այն գաւառի վերաբերիլը՝ լոկ ենթադրութեամբ է դրուած, եւ ասոր պատճառն ալ այն է, որ ժողովոց ստորագրութեանց մէջ ստորագրողք երբեմն գաւառին (ἐπαρχία) անունը յիշելը զանց առած են եւ երբեմն պարզապէս Ἀρμενίας ընդհանուր անունը գործածած են։ Տրապիզոնի՝ իբր մայրաքաղաք, Մեծ Հայոց մաս համարուիլը՝ Յովհաննէս կաթողիկոսի խնդրական ճոխութեանը վրայ հաստատուած է։ Մասնաւոր մտադրութեան արժանի է Պարիսեան Suppl. Gr. 1085 եւ 1086 ձեռագրաց (Mansi XI 992 B) սա մէկ կտորը.

*Ἠλίας ἐλάχιστος ἐπίσχοπος Δαδίμων μητροπόλεως τῆς $\overline{\Delta}$ Ἰουστινιανῆς δρίσας ὑπέγραψα.*

Աւելի կրտսերագոյն ձեռագրաց մէջ կը կարդանք փոխանակ $\overline{\Delta}$ Ἰουστινιανῆςի՝ պարզ διουστινιανῆς, իսկ հրատարակութեանց մէջ բոլորովին խանգարուելով եղած է՝ δευτέρας Ἰουστινιανῆς. Նմանապէս Δαδίμων շրջած է Δασίμων եւ Σασιμῶν թիւր ընթերցուածոյ ձեւերու։ Դադիմայ մասին հմմտ. Գէորգ Կիպրացի 948, 949 եւ իմ ու Գ. Հոֆմանի ծանօթութիւնները էջ 170, 171։

*Ἐπαρχία $\overline{\Delta}$ Ἀρμενίας ἄλλης*
*Δαδίμων νῦν μητρόπολις.*

Գէորգ Կիպրացի իւր պատմութիւնը գրեց 590ի եւ 600ի մէջերը. վերոյիշեալ նախադասութեան մէջ գործածուած νῦν մակբայը յայտնի մատնանիշ կ'ընէ, թէ $\overline{\Delta}$ Ἀρμενίας նահանգին

ներկայ կազմակերպութիւնը բոլորովին նորագոյն ժամանակի է։ Տարակոյս չկայ ամենեւին, թէ երբ Մաւրիկիոս (582—602) Պարսից հետ խաղաղութեան դաշինք հաստատելով Պարսկահայք Յունաց անցաւ, այն ժամանակ տեղի ունեցաւ այս նոր կազմակերպութիւնը։*

Ըստ հետեւորդի զանազանելու ենք՝

1. Չորրորդ Հայք. մայրաքաղաք՝ Մարտիրոսաց քղ.

2. Չորրորդ Յուստինիանա. մայրաքաղաք՝ Դադիմա։

Յովհաննէս կաթողիկոս պատմագիրը, Մաւրիկեայ՝ նահանգաց մէջ ըրած կարգադրութեանց վրայ մանրամասն խօսելով (տպ. Երուս. 1843, էջ 47) կը գրէ. "եւ չորրորդն կոչեցեալ Հայք յորում մայրաքաղաք Մարտիրոսաց պօլիս, այսինքն՝ Նփրկերտ, Յուստինիանունիստ զնա գրէ ի դիւան արքունի։„ Յովհաննէս հօս ἐπαρχία Μεσοποταμίας ἄνω ἤτοι Δ̄ 'Αρμενίας-ը՝ ἐπαρχία Δ̄ 'Αρμενίας ἄλλης-ի հետ կը շփոթէ. առաջնոյն մայրաքաղաքն է՝ Մարտիրոսաց քաղաք, իսկ երկրորդին՝ Դադիմա։ Առաջինը միայն Դ. Հայք կ'անուանուէր, թէեւ իր մէջ գտնուող երկիրները — բաց ի Յուստինիանու նախնի Դ. Հայոց նահանգին Մեծ Ծոփք գաւառէն, ամբողջապէս նոր առացուած գաւառներէ կազմուած էին. ասոր հակառակ Դադիման շրջապատող յուստինիանեան նահանգին մեծագոյն մասը՝ Դ. Յուստինիանա անուամբ Դ. Հայքէն անջատած էր։ Էդ դարուն երկրորդ կիսուն, Դ. Հայք՝ իր մայրաքաղաքովն հանդերձ, Իսլամի իշխանութեան տակ ինկաւ. այ-

---

* Յունաց եւ Պարսից մէջ այս խաղաղութիւնը տեղի ունեցաւ 591 թուականին, որուն հետեւութեամբ Դարա եւ Նփրկերտ երկու նշանաւոր քաղաքները հանդերձ Պարսկահայքով Յունաց անցան։ Ծ. Թ.։

նուհետեւ սովորութիւն եղաւ Բիւզանդացւոց իշխանութեանը տակ եղող Դ. Յուստինիանիաի՝ Դ. Հայք անունը տալ, ինչպէս յայտնի կը տեսնուի Թէոփանեայ, Մ. Խորենացւոյ, Ստեփ. Տարօնեցւոյ եւ այլոց գրութիւններէն։ Սակայն դիւանական գրութեանց մէջ պաշտօնական անուան անփոփոխ մնալուն կը վկայեն ժողովոյն ստորագրութիւնները։

Վերջին եպիսկոպոսին ստորագրութիւնն ամէն ձեռագրաց մէջ այսպէս է գրուած.

Μαριανὸς ἀνάξιος ἐπίσκοπος Κιθαριζῶν τῆς ā τῶν Ἀρμενίων ἐπαρχίας ὁρίσας ὑπέγραψα.

Կթառիճ[1] քաղքին Ա. Հայոց (Մեղիտինէ) մօտն համարուիլը յայտնի սխալ է։ Հ. Ղուկ. Վ.

---

1 Կթառիճի մասին խօսող տեղերը հաւաքած եմ Գէորգ Կիպրացւոյն գրութենէն, էջ 174 եւն։ Իբր յաւելուած հոս վրան կ'աւելցնեմ նաեւ հետեւեալը. Կոմբէֆիի (Combefis) հրատարակած "Պատմութիւն Միակամեայց" անուն գրքին ետեւն աւելցուած „De rebus Armeniorum" յաւելուածին մէջ, Կթառիճ անունն ըստ Պարիսեան օրինակին Κιτρίε ընթերցուած է, իսկ ըստ Վատիկանեան լաւագոյն օրինակին Κίτριις (ուստի եւ KITPIE ձեւը յառաջ է եկած KITPICի սխալ ընթերցանութենէն։) Վերջինս համեմատ է ասորերէն Kītrīz ձեւին (ܩܛܪܝܙ)։ Ըստ Ստեփաննոսի Ասողկան (Հրտ. Ստ. Մալխասեանց էջ 86) "Աշոտ ոմն տաւաքեալ յարքայէն Պարսից Խոսրովու (Փարվէզ) եւ հարեալ զՑոյնն՝ եառ զԿթուիճ քաղաք Հաշտենից"։ Ասողկան զԿթառիճ կամ Կթուիճ Հաշտենից գաւառին մէջ դնելը՝ Պրոկոպեայ վկայութեան հետ (ἐπὶ Ἀσθιανήνης τῆς καλουμένης ἐστί) կը համաձայնի։ Հոս տարօնեցի մատենագիրը սխալ քաղուածոյ մ'ըրած է Սեբէոսէ, որ Խոսրովու յԱսորիս եւ ի Միջագետս ըրած աշխարհակալութիւնքն պատմելէն ետքը, Աշտատ Յեզդայարի՝ Խոսրովու թագաւորութեան 18դ ամին, Հայաստան ըրած արշաւանքը կը պատմէ մանրամասն։ "Եղեւ պատերազմ մեծ ի Դուռ եւ յՈրդրու։ Հարին զաւրն Յունաց եւ խորտակեցին կործանմամբ մեծաւ։ Բազումք մեռան ի պատերազմին, եւ ոչ գոյր թիւ սպանելոցն ի

Ինճիճեան իւր “Ստորագրութիւն Հին Հայաստանեայց„ երկասիրութեանը մէջ (էջ 175, թ. 1)

---

գաւառին. Հալածեաց զնոսա մինչեւ ի քաղաքն Սատաղացւոց եւ ինքն գումարեալ բանակեցաւ շուրջ զկարնոյ քաղաքաւ:„ Պարսից բանակին մէջ կը գտնուէր նաեւ Թէոդոս անուն յոյն մը, որուն նկատմամբ կ'ըսէին “թէ նոյն ինքն է որդի Մաւրկայ:„ Կարին անձնատուր կ'ըլլայ: Իսկ Աշտատ “գնաց եւ կալաւ զքաղաքն Հաշտենից՝ Չիթառիճ եւ զՍատաղ եւ զԱռաստիայ եւ զՆիկոպոլիս եւ գնաց:„ Կիթառիճ անուան տուած Չիթառիճ ձեւը՝ մասնաւոր մտադրութեան արժանի է: Ո՛չ յունարէն եւ ո՛չ ալ հայերէն անուան նկարագիրն ունեցող “Չիթառիճ„ի սկզբնատառը պէտք է որ տեղացի բնիկ (ուրարտեա՞ն) ժողովրդեան բերնին մէջ կոկորդային յատուկ հնչում մ'ունենար, ճիշդ ինչպէս որ այսօր իտալերէնի մէջ C տառը մերթ խիստ եւ մերթ շչական կը հնչուի: Շատ հետաքրքրական է Զաքարիա Հռետորին Թ. գրոց վեցերորդ գլուխը, ուր պայծառ կը նկարագրուի Արծն՝ Պարսկաստանի սահմանագաւառին՝ քաղաքական, տնտեսական, հարկի ու տրոց յարաբերութիւնները: Յովհաննէս եփեսացւոյն ու Մենանդրեայ վկայութեանց համաձայն՝ այն երկրին հողը բարեբեր էր եւ բնակիչքն ամբողջովին քրիստոնեայ էին: Ժողովուրդը Մադային քաղքի արքունական գանձարանին որոշեալ հարկը կը վճարէր. բաց աստի գաւառն իւր յատուկ Բդեաշխն (Սատրապ) ունէր, որուն իշխանութիւնը ժառանգական էր: Ուստի եւ հոս եւս ըստ ամենայնի նոյն յարաբերութիւնքն ու վիճակը կը տեսնենք, ինչ որ ըստ Յուստինիանու ԼԱ՟ հրովարտակին եւ Պրոկոպեայ վկայութեան, Չորրորդ Հայոց մէջ, յառաջ քան նոյնին նոր կազմակերպութիւնը՝ տեսած էինք: Վերջապէս մեր վերյիշեալ տեղէն սա մէկ կարեւոր ծանօթութիւնն եւս կ'առնունք, թէ 536 թուականէն յառաջ՝ Կիթառիճ եւ Նփըրկերտ երկու Պարսից սահմանին քովերը կառուցուած բերդաքաղաքներուն մէջ մէյ մէկ Դուքս կը նստէր եւ իւրաքանչիւրն իւր իշխանութեան տակ ունէր գունդ մը զօրաց, որոնք միշտ պատրաստ կը կենային՝ ընդ երկու մեծ պետութեանց մէջ թշնամական շփում մը յառաջ գալը, Արծնի վրայ յարձակելու եւ բոլոր գաւառն աւերակ դարձնելու:

ստորագրութեան սոյն կարգը՝ τῆς Δ̄ τῶν 'Αρμενίων ἐπαρχίας կարդալու է կ'ըսէ։ Ես իրեն հետեւած եմ (Գէորգ Կիպր. էջ 175։) Իւր ըրած ենթադրութիւնը թէեւ բանաւոր է, սակայն ասով ամէն դժուարութիւնք վերցած չեն ըլլար տակաւին։ Եղիաս դադիմացւոյն ստորագրութենէն կը տեսնուի, որ Հինգվեցեան ժողովոյն ժամանակ՝ ἐπαρχία 'Αρμενίας Δ̄ ἄλλης (Միւս Չորրորդ Հայք,) որուն մասն կը համարէր Գէորգ Կիպրացի թէ զԴադիմա եւ թէ զԿիթառիճ, Դ. Յուստինիանոս կ'անուանուէր։ Կ'երեւայ թէ արեւելեան գաւառները՝ (Խորձեան, Հաշտեանք, Հանձիթ) վարչական տեսակէտէ պատճառի մը համար՝ Նփրկերտու նահանգին հետ (Մեծ Ծոփք եւ Արձն) = Դ. Հայք, միացուած էին։ Եթէ հնար ըլլար զայս ենթադրել, ամէն դժուարութեանց առջեւն առած կ'ըլլայինք. սակայն այսպէս չէ։ Մենք վերն ակնարկած էինք արդէն, թէ եկեղեցական աշխարհագրութեան մէջ Դիոկղետիանու ըրած բաժանմունքն անփոփոխ մնացած էին ամբողջովին, ինչպէս նաեւ Յուստինիանոս իւր ԼԱրդ նշանաւոր հրովարտակին մէջ բացայայտ կը գրէ, թէ նահանգաց ու գաւառաց մէջ ըրած վարչական փոփոխութիւնները՝ եկեղեցական թեմերու համար ամենեւին արժէք չունին։ Ուստի եւ Մաւրիկիոս կայսեր ըրած նորոգութիւններն եկեղեցական աշխարհագրութեան վրայ այնչափ միայն ազդեցին, որ Մելիտինէ գաւառը (ըստ դիոկղետիանեան բաժանման՝ Բ. Հայք, ըստ Յուստինիանու՝ Գ. Հայք,) այժմ թէ քաղաքական եւ թէ եկեղեցական աշխարհագրութեան մէջ կը կոչուէր Ա. Հայք. նմանապէս Սեբաստէ նահանգը (Դիոկղ.՝ Ա. Հայք, Յուստինիանոս եւ Մաւրիկիոս՝ Բ. Հայք) եկեղեցական աշխարհագրութեան մէջ եւս Բ. Հայք կ'անուանուէր, հմմտ. Գէորգ Կիպր. 227 եւ 242։ Այս համաձայնութիւնը զուտ արտաքին է, ինչու որ

Եպիսկոպոսաց տեղեկագրաց մէջ (Notitiae episcopatuum) Սեբաստէ գաւառին սահմանները գրեթէ դիոկղետիանեան Ա. Հայք նահանգին կը համապատասխանեն։ Միայն Բերիսա, զոր Յուստինիանոս Հայաստանի հետ միացուցած էր, եկեղեցական աշխարհագրութեան մէջ Սեբաստէ նահանգին մասը համարուեցաւ։ Ժողովոց ստորագրութիւններուն մէջ՝ այս եկեղեցական բաժանումներն ամենեւին նկատողութեան առնուած չեն. ինչպէս ըսինք, եպիսկոպոսք իրենց ստորագրութիւնները նահանգաց կամ գաւառաց նոյն ժամանակուան քաղաքական բաժանման համաձայնելով գրած են։ Մեր ըսածներն որոշ կը տեսնուին Հինգվեցեան ժողովոյն հետեւեալ ստորագրութիւններէն.

*Λεόντιος ἀνάξιος ἐπίσκοπος Σεβαστείας τῆς B̄ των 'Αρμενίων ἐπαρχίας ὁρ. ὑπ.*

բայց՝

*Καλλίνικος χάριτι Χριστοῦ ἐπίσκοπος τῆς Κολωνεατῶν πόλεως τῆς μεγάλης τῶν 'Αρμενίων ὁρ. ὑπ.*

*Φώτιος ἐλέῳ Θεοῦ ἐπίσκοπος τῆς Νικοπολιτῶν φιλοχρίστου πόλεως τῆς μεγάλης τῶν 'Αρμενίων ὁρ. ὑπ.*

*Γρηγόριος χάριτι Χριστοῦ ἐπίσκοπος τῆς 'Ιουαταλέων* (Պարիսեան 1320 *ἰουταλέων* ընթերցիր *Σαταλέων*) *πόλεως τῆς μεγάλης τῶν 'Αρμενίων ἐπαρχίας ὁρ. ὑπ.*

Ստորագրութիւններէն յայտնի կը տեսնուի, որ եպիսկոպոսք ոչ թէ ըստ եկեղեցական բաժանման, այլ ըստ քաղաքականին՝ իրենց եկեղեցական թեմերուն անունները նշանակած են։ Ուստի եւ Յուստինիանոս Բ.ին կառավարութեան ատեն (685—695) տակաւին անփոփոխ մնացած էին

Մաւրիկիոսի ըրած նահանգային բաժանումները։ Իսկ որովհետեւ նահանգաց զինուորական բաժանմունքը բոլորովին տարբեր էին, ապա ուրեմն կը հետեւի, թէ Յուստինիանոս Բ.ի ժամանակ զինուորական թեմերը՝ նահանգաց քաղաքային բաժանման չէին համապատասխաներ։

## Է.

## Լեւոն Իսաւրացւոյն թեմերու մէջ ըրած նորոգութիւնը։

Լեւոն Իսաւրացին (716—741), այս տաղանդաւոր իշխանը, փրկիչ եղաւ հռոմէական պետութեան՝ Արաբացւոց արշաւանաց առեն։ Դամասկոսի կառավարութիւնը յաղթ նաւատորմիղ մը կազմած էր երկրորդ անգամ։ Երբ արաբացի ցամաքային զօրքը Փոքր Ասիան աշխարհակալելէն ու Պերգամոն հօյակապ քաղաքը հիմնայատակ կործանելէն ետքը (716), ցամաքի կողմանէ պետութեան մայրաքաղաքը պաշարեց, անդիէն արաբական նաւատորմիղը՝ Սիւլէյմանի հրամանատարութեամբ, Բիւզանդիոնի ծովային ճամբաները բռնած ու քաղաքին հետ ամէն ծովային հաղորդակցութիւն կտրած էր։ Արաբացիք տարի մ՚ամբողջ ընդդէմ կարէձմեռն սառնամանեաց Կ. Պոլսոյ անառիկ պարսպաց առջեւ բանակելէն ետքը, ահագին կոտորածով յետս ընկրկեցան (Աւգ. 718)։ Ի մշտնջենաւոր յիշատակ իրացս, արեւելեան յոյն եկեղեցին՝ Լեւոն Գ.ի այս ահռալի քաջագործութիւնը՝ իւր շարականներուն մէջ անմահացուց։ Ներքուստ եւ արտաքուստ ապահովուած՝ Լեւոն իւր ամբողջ մտադրութիւնը պետութեան վերածննդեան վրայ դարձուց։ Իւր նախաձեռնութեամբը սկսաւ բովանդակ պետութեան նոր կազմակերպութիւնը՝ քաղաքական, զինուորական ու եկեղեցական իրաց մէջ, նպատակ ունենալով՝ առեղծել

պետական բացարձակ ու գերագոյն իշխանութիւն մը, թէ ի քաղաքականս եւ թէ յեկեղեցականս, առանց ամենեւին եկեղեցական իշխանի մ'եւս հարկաւորութեան։ Սրբոց Պատկերաց յարգութեան դէմ իւր հանած հալածանքները՝ առաքելական աթոռոյ հետ ինչպիսի ահագին հակառակութեանց ու կռիւներու պատճառ տուած ըլլալը ծանօթ է։ Բնական է թէ Մահմետականք՝ քրիստոնեայ Արեւելք ծագած, կրօնական ծանր հետեւութիւն ունեցող այսպիսի եկեղեցական երկպառակութիւն մը՝ հաշտ աչօք կը դիտէին, յօգուտ իրենց քաղաքական նպատակներուն։

Յուստինիանու գահընկեցութենէն ետքը, պետութիւնը՝ մերթ ծովային զօրաց եւ մերթ անձնապահաց գնդերուն մէջ առէպ ծագած ապըստամբութեանց ու անկարգութեանց պատճառաւ, գրեթէ կործանման դուռն էր հասած։ Արաբացիք միւս կողմանէ անտէրընչութեան մատնուած Բիւզանդեան պետութեան երկիրներուն աւերում կը սպառնային։ Պետութեան վերահաս այս ծանր ճգնաժամուն երեք քաջամարտիկ զօրավարք՝ իրենց դիւցազն ու անձնանուէր քաջագործութիւններովը՝ կայսրութեան ոչ թէ միայն նոր ոյժ ու կենդանութիւն տուին, այլ դեռ անոր գոյութեանը հինգ դար եւս երաշխաւորեցին. այս զօրավարներն էին՝ Լեւոն, Արտաւազդ եւ Կոստանդինոս։

Ո՛չ մեղկ թիկնապահաց գնդերը եւ ոչ ալ ապստամբ ծովային զօրացն նաւատորմիղը, այլ սահմաններու վրայ Արաբացւոց հետ անդադար կռուիլ ստիպուած ձիաւորաց արի գնդերը՝ այս անտէրընչութեան վերջ տուին, 717ին Արեւելեան գումարտակին հրամանատար — զԼեւոն՝ գահը բարձրացընելով։ Իւր օգնականն էր Հայ գումարտակին զօրավարը՝ Արտաւազդ, որ յետոյ իւր փեսան[1] եղաւ։

---

1 Յայտնի է թէ Արտաւազդ Լեւոնի յաջորդն ընտրուելու յոյս ունէր, գուցէ թէ Լեւոն՝ որ կայսր ըլլալէ

Նոր պաշտօնարանը կազմուած էր մեծաւ մասամբ զինուորական տարրէ։ Հին դիոկղետիանեան քաղաքային վարչութիւնը այլ եւս հինցած էր եւ ժամանակին պահանջմանցը չէր յարմարեր։ Ընդհակառակն զինուորական վարչութիւնք պետութեան ամէն կողմը զօրացած էին։ Իտալիոյ ու Ափրիկէի քաղաքական վարչութիւնքը բոլորովին քայքայած ու անզօր եղած էին, նոյն վիճակը կը տեսնուէր նաեւ Արեւելից քաղաքական վարչութեանց վրայ։ Լեւոն այս երկու տեսակ վարչութեանց իրարու նախանձընդդէմ հակառակութիւնը՝ պետութեան ներքուստ ի ներքս զօրանալուն առջեւ թումբ մ՚ըլլալը տեսնելով, վերջ տուաւ քաղաքական վարչութեան եւ զինուորական պաշտօնէից յանձնեց միեւնոյն ժամանակ միանգամայն նահանգաց քաղաքական կամ ոչ-զինուորական վարչութիւնը։ Ըստ հետեւորդի այն նահանգները, որոնք մինչեւ նոյն ատեն զինուորական թեմեր էին, այնուհետեւ եղան միանգամայն քաղաքական նահանգներ, իսկ թեմերու դումարտակներուն ընդհանուր հրամանատարները՝ սկսան միանգամայն նահանգապետի պաշտօնը վարել։ Ուստի եւ Լեւոն՝ Հերակլեան հարստութեան ատեն հաստատուած զինուորական թեմերը՝ քաղաքական նահանգներու վերածելով, պետութեան նոր բաժանում մ՚ըրաւ։

Պետութեան կազմակերպութեան համար Լեւոնի ըրածներուն մասին մեր բոլոր գիտցածներն անուղղակի աւանդութիւններ են. ուստի եւ լոկ — ենթադրութիւն։ Ը՟ դարուն գիտենք որ յԵւրոպայ՝ երեք եւ յԱսիայ — առանց նաւատորմիղը կամ ծովային բանակաթեմը միասին հաշուելու

---

ետքը՝ որդի մ՚ունեցաւ, զինքն ալ այս քաջալերած ըլլայ։ Իւր ուղղամիտ հաւատոց կողմն ըլլալը՝ զուտ քաղաքական նպատակ ունէր։

— տասնումէկ զինուորական թեմ կար։ Արեւելեան մեծ բանակաթեմը՝ որուն հրամանատարն էր երբեմն Լեւոն, պարզապէս վարչական պատճառներու համար երկու մասի բաժնուելով, արեւմտեան՝ Ասիա, Լիւդիա, Կարիա (բուն մասին) եւ Փռիւգիա Ա. գաւառները՝ զատ նոր թեմի մը վերածուեցան, եւ հոս բանակած եւրոպայի գնդերուն անուամբը՝ նահանգն եւս τὸ τῶν Θρακησίων θέμα (Թրակեսեան բանակաթեմ) անուանուեցաւ։ Թեմին ընդհ. հրամանատարին ու նահանգապետին նիստն էր՝ Եփեսոս, Ասիոյ առաջին քաղաքը։ Երկու բանակաթեմերն ալ խաւրեան հարստութեան արքունի տան միշտ հաւատարիմ մնացին, այնպէս որ՝ Լեւոնի մահուընէն ետքը, երբ իր փեսան — Արտաւազդ — ինքզինքը 741ին կայսր հռչակեց, Լեւոնի քանուիրեք տարեկան օրինաւոր յաջորդը՝ Արեւելեան բանակաթեմին զօրավար — Լանկինոսի ու Թրակեսեան բանակաթեմին զօրավար — Սիսիննիոսի. հաւատարմութեամբը միայն կրցաւ՝ Արեւելեան բանակաթեմին Ամուրիոն գլխաւոր քաղաքը ճողոպրելով՝ ապահով մահուընէ զերծանիլ։

Թրակեսեան բանակաթեմին ծագման վրայ մանրամասն կը խօսի Դիլ (էջ՝ 8)։ Է դարուն արդէն սոյն անուամբ զատ գունդ մը կար, որ սակայն ոչ թէ անկախ զումարտակ մը, այլ Արեւելեան բանակաթեմին մէկ վաշտը (turma) կը կազմէր[1]։ Թրակեսեան զօրաբանակին առաջին հրամանատարն եղած է՝ Սիսիննիոս, որ Է դարուն առաջին կիսուն նշանաւոր զօրավարն եղած էր։ Սիսիննիոս կրցաւ իր մեծ արժանեացը համար միայն Պատրիկ տիտղոսին արժանանալ։ Սակայն այս տիտ-

---

1 Ամէն նորակազմ բանակաթեմերը նախնականապէս վաշտեր էին. այսպէս, Քարսիանոն՝ վաշտ մըն էր Հայկական բանակաթեմին, Կապադովկիա՝ Արեւելեանին, եւ կամ պարզապէս սահմանակալութիւն, ինչպէս՝ Սելեւկիա։

զօրը այն զօրաբանակին զօրավարութեան աստիճանին հետ ի հարկէ կցուած չէր, նոյնպէս՝ ինչպէս աւելի հնագոյն ու մեծագոյն հրամանատարութեանց (Արեւելեանին եւ Հայկականին) վրայ վերը տեսանք:

Բուկելլարիոն (τῶν Βουκελλαρίων) զօրաբանակին ինչպէս կազմակերպուած ըլլալուն մասին դժուարին է ապահով բան մ՚ըսել, սակայն հաւանականօրէն կարելի է ենթադրել, թէ Արտաւազդայ, որ πατρίκιος καὶ κόμης τοῦ Ὀψικίου էր, անկումէն ետքը, ստիպիչ պատճառներու հարկէն զինուորական խորհրդարանը որոշած ըլլայ՝ այս մեծատարած հրամանատարութեան արեւելեան մէկ կէսը, Անկիւրիա գլխաւոր քաղաքով, ուրոյն բանակաթեմի վերածել: Առաջին անգամ 767ին στρατηγὸς τῶν Βουκελλαρίωνի կը հանդիպինք: Այս զօրաբանակն իր համբաւն ու պատիւը պահեց, եւ թէեւ իր յառաջուան ընդարձակութիւնը չունէր այլ եւս, այսու հանդերձ հրամանատարը Պատրիկ տիտղոսը դեռ իր վրան կը կրէր մինչեւ Թ․ դար: Ասով լրացած կ՚ըլլայ Իրենեայ (780—802) կառավարութենէն յառաջ կազմակերպուած բանակաթեմերու կամ զօրաբաժիններու ամբողջական թիւը: Ասոր իբր ապացոյց կրնայ յառաջ բերուիլ Լեւոն Դ․ի կայսրութեան օրով (775—780) հռոմէական (ասիական) բանակին ընդդէմ Գերմանիկեայ եւ Արաբացւոց ըրած արշաւանքին մէկ ստորագրութիւնը․ “Յայսմ ամի (778—9) Նստաւ Թումամա առ Գաբեկոնեաւ եւ յուզէր խռովութիւնս: Իսկ կայսրն Լեւոն առաքեաց յԱսորիս հարիւր հազար արանց ի զօրաց անտի Հռոմայեցւոց, որոց զօրավարքն էին այսոքիկ․ Միքայէլ Լաքանոդրակոն՝ Թրակեսացւոց, Արտաւազդ Հայ՝ Արեւելեայց, Տաճատ՝ Բուկեղարացւոց, Վարազտիրոց՝[1]

[1] “Վարազտիրոց„ սովորական հայ անուան առ Թէոփանեայ Καριστερότζης նշանակութիւնը պարզապէս

Հայոց եւ Գրիգոր որդի Մուշեղայ Ոփսիկիացւոց, եւ շուրջ նստեալ պաշարեցին զքաղաքն Գերմանիկեցւոց:„¹ Թէոփ. 698, 8—15:

Այս զօրաժողովոյն մէջ համախմբուած կը տեսնենք ասիական ամբողջ հեծելազօրը, τὰ περατικὰ θέματα “Բանակաթեմք յայնկոյս Բոսփորի„ այսինքն նախալեւոնեան հին՝ Ոփսիկիոն, Արեւելեան եւ Հայկական բանակները, որոնց վրայ հիմայ կ՚աւելնան նաեւ իսաւրեան հարստութեան ժամանակ կազմակերպուած երկու — Թրակեսիոն եւ Բուկելարիոն — զօրաբաժինները: Այս մինչեւ հիմայ յիշուած բանակաթեմերէ դուրս՝ ուրիշ զինուորական թեմ մը կամ զատ ու անկախ զօրաբաժին մը չի յիշատակուիր մատենագրաց քով. ապա ուրեմն այսչափ էր բիւզանդեան պետութեան ունեցած բանակաթեմերու ամբողջական թիւը:

---

գրչագրաց թիւր ընթերցմանէ կրնայ յառաջ եկած ըլլալ. վասն զի յայտնի է թէ, հին յունական գրեթէ սակաւ ինչ տարբերութեամբ իրարու նման ձեռագիր K եւ B տառերը շատ դիւրաւ կարելի էր իրարու հետ խառնակել, մանաւանդ երբ ընդօրինակողին գրչին առջեւ անծանօթ բառ մը կամ նաեւ առաւել անուն մը ներկայանար: Նմանապէս “Գրիգոր որդի Մուշեղայ„ փոխեցինք դրինք բնագրին Γ. Μουσουλακίου ին յաջող յունականացած հայ անուան ձեւը: Ծ. Թ.

¹ Τούτῳ τῷ ἔτει ἐκάθισε Θουμάμας εἰς τὸ Δάβεκον καὶ ἐστασίασεν. Λέων δὲ ὁ βασιλεὺς ἀπέλυσε τὰ στρατεύματα τῶν Ῥωμαίων, καὶ εἰσῆλθον ἐν Συρίᾳ χιλιάδες $\overline{\rho}$, ὧν ἡγοῦντο Μιχαὴλ ὁ Λαχανοδράκων τῶν Θρᾳκησίων, καὶ Ἀρτάνασδος ὁ Ἀρμένιος τῶν Ἀνατολικῶν, καὶ Τατζάτης τῶν Βουκελλαρίων, καὶ Καριστερότζης τῶν Ἀρμενιάκων, καὶ Γρηγόριος ὁ τοῦ Μουσουλακίου τῶν Ὀψικιάνων, καὶ ἐκύκλωσαν τὴν Γερμανίκειαν.

## Ը.

### Ամորեան հարստութեան ժամանակ Բանակաթեմերու վիճակութիւնը, ըստ Իբն Խորդադբէհ եւ Կուդամա իբն Ջաֆար-էլ-Բաղդադի։

Բիւզանդեան բանակաթեմերու ծագման մասին մեր ցարդ ըսածները՝ յոյն մատենագրաց ցիր աստ անդ յիշատակած պատահական կամ հարեւանցի աւանդութիւններէն ստիպուած էինք քաղելով ի մի ամփոփել, այս պատճառաւ իսկ մեր ըրած ուսումնասիրութիւնը, եթէ ոչ ամբողջովին, գոնեայ մասամբ իւիք — այսպէս ըսելու համար — բաղադրական կամ լաւ եւս՝ հիւսուածական նկարագիր մ՚ունեցաւ։ Այժմ առաջնորդ մեզի կը հանդիսանայ Իբն Խորդադբէ, որուն “Կիտաբ ալ մասալիկ վա՛լ մամալիկ„ անուն գրքին ամենայն մասամբ վստահելի ու ժամանակակից առաջին կարգի ստուգապատում աղբիւր ըլլալը բնաւ խնդիր չի վերցըներ։ Խորդադբէ արաբական պետութեան վարչական մարմնոյն մէջ նշանաւոր դիրք մ՚ունենալէն զատ, նաեւ բարեկամական սերտ յարաբերութիւն ունէր Բիւզանդացւոց հետ։ Ինքը պաշտօնական ու վաւեր աղբիւրներէ ժողվելով՝ գրած է Բիւզանդեան պետութեան քաղաքային-զինուորական վարչութեան ստորագրութիւնը, որ ըստ de Gojeի 840 եւ 845ին մէջերը՝ որ է ըսել — Թէոդորայի եւ անոր որդւոյն՝ Միքայէլ Արբշռի կառավարութեան ժամանակ գրուած ըլլալու է։ Այս գործքը մեզի կը ներկայացընէ Լեւոն Ե. Հայազգւոյն (813—820), Միքայէլ Թոթովին (820—829) եւ սորա որդւոյն՝ Թէոփիլեայ (829—842) կառավարութեան ժամանակ արեւելեան հռոմէական պետութեան ունեցած յօրինուածութիւնը։ Սակայն Վարդայ (Bardas) ըրած վարչական քանի մը փոփոխութեանցը մասին սոյն այս գրքին մէջ ամենեւին յիշատակութիւն մը չըլլալը, ի հարկէ

կը ստիպէ զմեզ համարելու թէ, մատեանս իւր ծագումը՝ Միքայէլ եւ Թէոփիլոս կայսերաց ատեն, Ամիրապետաց արքունիքը հասնող բերանացի ու գրաւոր լրերէն միայն կրնայ առած ըլլալ։ Տեսնենք սակայն թէ ինքը — Իբն Խորդադբէ, Մուսլիմ իբն աբի Մուսլիմ ալ Ջարմիի ճոխութեանը վրայ յեցած ինչ կ'ըսէ (de Goeje p. 77 ff.)։

Ըստ վկայութեան Մուսլիմ իբն աբի Մուսլիմ ալ Ջարմիի, հռոմէական պետութիւնը կը բաժնուի տասնուչորս նահանգի։ Այս նահանգներէն երեքը յայնկոյս ծովու կը տարածուին։

1. Թափլա[1] (طافلا) գաւառ, որ Կ.Պոլսոյ շուրջը կը տարածուի։ Իւր սահմաններն են, արեւելքէն՝ նեղուց (Կ.Պոլսոյ) որ կ'երկննայ մինչեւ Ասորւոց ծով, իսկ արեւմտեան կողմն իրեն սահման ունի Խազրաց ծովէն[2] (Սեւ ծով) մինչեւ Ասորւոց ծով տարածուող պատը (المغرب), որուն երկայնութիւնը օրուան մը ճամբայ է։ Այս պատը Կ.Պոլսէն երկու օրուան հեռաւորութիւն ունի։ Միւս սահմաններն են, հարաւէն Ասորւոց ծով, իսկ հիւսիսէն Խազրաց ծով։

2. Տարակիա (تراقية) գաւառ, որ առաջնոյն ետեւի կողմը կը տարարածուի։ Ասոր սահմաններն

[1] Ընթերցուածոց պէսպիսութիւնք են Տալակա Թայալա, Թալայա, ուստի Թափլա եւս թիւր ընթերցուածոյ ձեւ մըն է՝ Թափրա անուան, որ Կ.Պոլսոյ գաւառին անունն էր։ Ծն. de Goejeի.

[2] Խազրաց ծով անունն ածանցուած է Կովկասու հիւս. կողմը բնակող "Խազիրք" ազգի մ'անունէն. Վերջնոյս մասին ընդարձակ գրած են ի մէջ այլոց՝ Dorn. Auf die Chazaren bezügliche Nachrichten des orientalischen Historikers Tabari. Journ. Min. 1844, Bd. 43. Abteil. II 1—25, 67–98. – J. Klaproth. Mémoire sur les Khazars, Mémoire relatifs à l'Asie 1823 t. 1 p. 147—156.

Ծ. Թ.

են, արեւելքէն՝ պատը Հարաւէն Մակեդոնիա, արեւմտքէն՝ Բուրջանաց երկիր (Բուլղար), Հիւսիսէն՝ Խազրաց Ծով։ Գաւառիս երկայնութիւնը 15 օրուան ճամբայ է, իսկ լայնութիւնը՝ 3 օրուան։ Տասը ամրոց ունի։

3. Մակադունիա (مقدونية) — Ասոր սահմաններն են, արեւելքէն՝ պատը, Հարաւէն՝ Ասորւոց Ծով, արեւմուտքէն՝ Սլաւաց երկիր (al Ṣḳa-laba), Հիւսիսէն՝ Բուրջանաց երկիր։ Այս նահանգին երկայնութիւնը 15 օրուան ճամբայ է, իսկ լայնութիւնը՝ 5 օրուան։ Երեք ամրոց ունի։

Ցայսկոյս նեղուցի գտնուող տասնումէկ նահանգներն են՝

4. Ափլաջունիա (أفلاجونية), որ հինգ ամրոց ունի։

5. Ալ-Օփտի-Մատի (الأفظى ماطى), անուն մը, որ կը նշանակէ "ունկն եւ ակն"։ Այս նահանգն ունի երեք ամրոց եւ Նիկոմեդիա անուն քաղաքը, որ այժմ աւերակ է։

6. Ալ-Օբսիկ (الأبسيق), նահանգն ունի տասն ամրոց եւ Նիկիա անուն քաղաքը, որ Ծովէն ութը մղոն հեռու է, եւ 12 մղոն երկայնութիւն եւ 7 մղոն լայնութիւն ունեցող անուշ ջրոյ լճի մ'եզերքը շինուած է. լճին մէջ երեք լեռ կայ։ Քաղաքին եւ լճին միջեւ հաղորդակցութեան դռնակ մը կայ։ Ի դիպուածի որ, քաղաքին բնակչացը ո՛եւէ վտանգ մը սպառնայ, կանայքն ու տղաքը նաւ նստեցընելով, լճին լերանցը վրայ զանոնք կ'ապահովցընեն։

7. Տարկասիս (ترقسيس) ունի Աֆսիս (Եփեսոս) անուն քաղաքը, ալ-Ավասի շրջանակին մէջ, եւ ուրիշ չորս ամրոց։ Եփեսոս սուրբնակներու քաղաքն է։ Այս քաղաքին մզկիթին վրայ արաբական

արձանագրութիւն մը կայ, ի յիշատակ Մալամայի յաղթութեամբ Հռոմայեցւոց երկիրը մտնելուն։

8. Ան-Նաթոլուս (الناطلوس), այսինքն՝ Արեւելք։ Այս նահանգը հռոմէական պետութեան ամենամեծ նահանգն է. ունի Ամուրիա քաղաքը եւ երեսուն ուրիշ ամրոց։ Այս նահանգին մաս կը համարուի նաեւ ալ-Բիտին եւ ալ-Մոսքաթալին։

9. Խարսիոն (خرسيون) Մալաթիոյ ճամբուն վրայ. բաց ի Խարշանա գլխաւոր քաղաքէն, ուրիշ դեռ չորս ամրոց ալ ունի։

10. Ալ-Բոկոլար (البقلار), հոս կը տեսնուի Անկիւրիա քաղաքը, Սամալա եւ ուրիշ տասուիրեք ամրոց։

11. Ալ-Արմինիակ (الأرمنياق) ունի Կոլոնիա եւ տասնուվեց ամրոց։

12. Խալտիա (خلدية), որ Հայաստանի (Արմինիա) սահմանակից է եւ վեց ամրոց ունի։

13. Սալուկիա (سلوقية) Ասորւոց ծովուն քով, որուն սահմաններն են Թարսուս եւ ալ-Լամէս գետը։ Նահանգիս կուսակալին պաշտօնն է կիրճերու վրայ (Pylae Cilicae) հսկել։ Այս նահանգին մէջն է Սալուկիա եւ ուրիշ տասն ամրոց։

14. Ալ-Կաբադոկ, որուն սահմաններն են՝ Թարսոսի, Ադանայի եւ ալ-Մասիսայի լեռները։ Այս նահանգին ամրոցներուն կարգէն են՝ Կոռա, Հասին, Անթիգավա, ալ-Աճրաք եւ Դու'լ Կիլա'։ Այս վերջինը ամրոցներով շրջապատուած լեռ մըն է։ Արաբացիք ասոր Դու'լ Կիլա' (դշխոյ ամրոցներու) անունը տուին, սակայն իսկական անունն է Ջաստաթրուն,[1] որ կը նշանակէ "աստղներու մեր-

---

[1] حسطون ոխալ ձեւը de Goeje ուղղելով կը գրէ جسطرون եւ կը մեկնէ՝ ἐγγὺς ἀστέρων (մերձ յաստեղս։) Թոմաշէկ կը ջանայ جيبسطرون, Ջիբիստրուն = Κυβίστρων

ձեցող ․ ։ Բաց ի այս վերոյիշեալ ամրոցներէն, գետանոնցմէ տասնուչորս ուրիշ ալ կայ։ Մաթամիր երկրին մէջ կը գտնուին՝ Մաշիդա, Բալանսա, Մալանդասա, Կունիա, Մալակուբիա, Բադալա, Բարբավա եւ Սալամուն դղեակները։

Հռոմայեցւոց (ալ-Րում) Պատրկաց թիւը միշտ տասուերկու է, որոնց վեցը Կոստանդնուպոլիս (ալ-Կոնսթանթինիա) իսկ մնացածները գաւառները կը նստին։ Այս Պատրիկներն են՝ Պատրիկ Ամուրիայի, Պատրիկ Անկիրայի, Պատրիկ Արմինիակի, Պատրիկ Տարակիաի, որ Կոստանդնուպոլսոյ ետեւը՝ Բուրջանի քով երկիր մըն է, Պատրիկ Սիկիլիոյ (Սիկէլիա) որ Ափրիկէի դիմաց մեծատարած կղզի ու ընդարձակ թագաւորութիւն մըն է, Պատրիկ Սարտանիայի, որ Ծովուն բոլոր կղզեացը վրայ կը տիրէ։

Արաբացի հեղինակին տուած այս ծանրակշիռ տեղեկութեանցը վրայ կ'արժէր լուրջ ուսումնասիրութիւն մը, որուն առաջին քայլն առած էր Դէֆրէմէրի՝ իւր սքանչելի, այս նիւթին նայող մէկ ուսումնասիրութեամբը [1], որ դժբախտաբար Բիւզանդագիտաց կողմանէ ըստ պատշաճի չգնահատուեցաւ։ Արաբագիտին՝ Քեբրոնը եւ Քար-

---

ընթերցուածոյ ձեւը պաշտպանել. տես՝ Asia minor էջ՝ 340, 341, սակայն ակնյայտնի սխալ է։ Ուստի եւ բոլորովին անհիմն է Ռամսէի՝ առ Պտղոմ. Ե. 6, 15. նշանակուած Kyzistra ձեւը իբր գրի սխալ ենթադրելով Kybistra ուղղագրելը։ Նիկիոյ Հայոց հնագոյն հրատարակութեանց մէջ Cyzistrorum ընթերցուածոյ ձեւը թերեւս մեզի երաշխաւորութիւն չի տար ձեռագրաց մէջ եւս նոյնպէս ըլլալուն, սակայն միւս կողմանէ ալ Հայոց միայն Կիզիստրա ձեւը ծանօթ ըլլալուն բնաւ ամենեւին տարակոյս չկայ։

[1] M. C. Defrémery, remarques sur l'ouvrage géographique d'Ibn Khordadbeh et principalement sur le chapitre qui concerne l'empire Byzantin. Journal Asiat. VI. Série T. VII. 1866 էջ՝ 239 ff. բայց ի մասնաւորի 265 ff.

սիանոնը իրարու հետ շփոթելը՝ բնաւ պատճառ մը չէ զինքը մեղադրելու, եթէ միւս կողմանէ միտ դնելու ըլլանք, որ իւր այս ուսումնասիրութեան բովանդակ շէնքը կազմուած էր Օքսֆըրտեան ձեռագրին մատակարարած խեղճ տուաղձէն։

Մուսլիմ իբն աբի Մուսլիմ-Ջարմիի բանին նայելով, ամբողջ բիւզանդեան պետութիւնը երկու մեծ մասի կը բաժնուէր, "Նահանգք յայնկոյս Ծովու" եւ "Նահանգք յայսկոյս Նեղուցի։" Արաբացւոյն ըրած այս ձեւ բաժանումը, կը համապատասխանէ ըստ ամենայնի Նիկեփորոս Ա.ոյ ատեններուան բիւզանդեան աղբերաց բաժանման եղանակին. ἐπισυνάξας δὲ τὰ στρατεύματα, οὐ μόνον ἐκ Θράκης, ἀλλὰ καὶ τῶν περατικῶν θεμάτων (Թէոփ.)։ Վերջինս շատ անգամ Ասիոյ նահանգները τὰ περατικὰ θέματα հաւաքական անուամբ կը յիշատակէ։ Նոյն ոճով կը զանազանէ նաեւ Կոստանդինոս՝ θέμστα τῆς δύσεως ἤγουν τῆς Εὐρώπης եւ θέματα τῆς ἀνατολῆς ἤγουν τῆς Ἀσίας.

Մեր՝ արաբացի մատենագրէն քաղած ծանօթութեանց մէջէն ամենայարգին է, մինչեւ այս ժամանակ կատարելապէս անծանօթ մնացած Թաֆլա թեմը, զոր ըստ de Goejeի՝ Թաֆրա կարդալու է τὸ τῆς Τάφρου καλούμενον θέμα. Պետութեան մայրաքաղաքը, մերձակայ արուարձանեայ վայրերովը հանդերձ, մինչեւ Անաստասեան պարսպը՝ ինքնակաց թեմ մը կը կազմէր։ De Goejeի ըրած այս ուղղագրութեան ճշդութեանը մասին հնախօսական ոեւէ տարակոյս կամ դժուարութիւն մը չմնար. զայս կը հաստատէ այն նահանգին մէկ ստորագրութիւնը, զոր Մասուտիէն քաղելով հոս յառաջ կը բերենք. "Թաֆլա նահանգ (طفلا գրի սխալ փխ.՝ طفرا), ուր կը գտնուի Կոստանդնուպոլիս։ Իւր սահմաններն են. արեւելքէն՝ Նեղուցը, որ Խազրաց Ծովէն մինչեւ Ասորւոց

Ծովը կը ձգուի, հարաւէն՝ Ասորւոց Ծով, արեւմուտքէն՝ պատ մը, որ Ասորւոց Ծովէն մինչեւ Խաղըրաց Ծովը կ՚երկննայ եւ կը կոչուի՝ Մակրուն Տիխոս (مقرون تيخوس), նշանակութիւնն է՝ երկայն պատ։ Այս պատին երկայնութիւնը չորս օրուան ճամբայ է եւ երկու օրուան հեռաւորութիւն ունի Կ. Պոլսէն։ Այս նահանգին մեծ մասը կը բաղկանայ գիւղերէ — որոնք թագաւորին եւ պատրկաց կը պատկանին — եւ արօտավայրերէ։

Τῆς Τάφρου կամ τοῦ Τείχους թեմը յոյն աղբերաց մէջ եւս յիշատակուած կը գտնենք սակայն մեզի ցարդ մթին մնացած էր։ Արդէն դիոկղետիանեան-թէոդոսեան ժամանակը պետութեան մայրաքաղաքին համար՝ ըստ օրինակի Հռոմայ, առանձին վարչութիւն մը սահմանուած էր, որուն գլուխը կը կոչուէր Կուսակալ Կոստանդնուպոլսոյ (ἔπαρχος τῆς πόλεως.) Նման Եգիպտոսի եւ Իլլիրիոյ կուսակալներուն, Կոստանդնուպոլսոյ կուսակալն ալ յետյուստինիանեան ժամանակները իւր վրան զինուորական պաշտօններ եւս առաւ։ Շատ հաւանական է, որ τῆς Τάφρου թեմը Թրակիոյ հետ միացընողը՝ Լեւոն Իմաստասէր կայսրն ըլլայ։

Թրակեան բանակաթեմը սահմանապահութեան պաշտօնն ունէր ընդդէմ հիւսիսային ազգաց։ Մաւրիկեայ օրով արդէն այս բանակաթեմին անունը յիշատակուած կը գտնենք։ Թրակեան գնդերը նախ ընդդէմ Աւարաց եւ յետոյ նաեւ Սլաւներու եւ Բուլղարներու դէմ ստիպուած էին բիւզանդեան պետութեան եւրոպական երկիրները պաշտպանել, որոնց ընդարձակութիւնը՝ նորանոր կորուստներու պատճառաւ, երթալով կը նուազէր։

Մակեդոնիա իբր առանձին թեմ մը Ը՟ դարուն վերջը կը յիշատակուի։ Այս թեմին մեզի ծանօթ առաջին հրամանատարը եղած է (813) Յովհաննէս պատրիկ եւ հրամանատար Մակեդոնիոյ.

(Թէոփ.)։ Ստաւրակիոսի՝ Սլաւներու վրայ տարած փառաւոր յաղթանակին վարձքն եղաւ, Մակեդոնիոյ՝ Թրակիայէ անջատուելով, ուրոյն բանակաթեմի մը վերածուիլը։

Պեղոպոնէսեան թեմին ծագումը Ը. դարուն վերջերը եւ Թ. ին սկիզբները կրնայ եղած ըլլալ. այս թեմին առաջին զօրավարն եղած է՝ Թէոկտիստոս Պրոտոպաթար։ Հելլաս թեմին ծագումն ալ, հաւանականագոյնս նոյն ժամանակներն եղած պիտի ըլլայ։ Իբն Խորդադբէհ երկու վերջին թեմերու մասին ամենեւին յիշատակութիւն չընելը ատով միայն կրնայ մեկնուիլ, որ նոյն ատեն անոնք տակաւին Մակեդոնիոյ մասը կը համարուէին։

Անցնինք այժմ ասիական բանակաթեմերու։

Ոփսիկիոն՝ անձնապահ զօրաց գումարտակը, երեք զօրաբաժնի կը բաժնուէր — Պափղագոնիա, Օպտիմատոն եւ Ոփսիկիոն։ Շատ հաւանական է որ, այս բաժանման հեղինակը Կոստ. Կոպրոնիմոս կայսրն ըլլայ, Արտաւազդայ կործանմանէն ետքը։ Արտաւազդ՝ կայսրութիւնը յինքն յափշտակել ուզող վերջին թիկնապահապետն եղաւ։ Այս դէպքը պատճառ տուաւ ասիացի թիկնապահաց պետին ունեցած հզօր իշխանութեանը չափաւորուելուն։ Գրեթէ սոյն նման պատճառք եղած պիտի ըլլան Հայկական բանակաթեմին հրամանատարին ալ ունեցած իշխանութեանը նուազելուն, զոր քիչ մը ետքը պիտի տեսնենք։

Հաւանական է թէ Ոփսիկիոնի այս ստորճանարկութեան հետեւութիւնն ըլլայ, մինչեւ նոյն ժամանակ սոյն գումարտակին բարձրագոյն հրամանատարութեան հետ կցուած “Պատրիկ„ տիտղոսին՝ հրամանատարին վրայէն բարձուիլը։ 765ին եւ 796ին յիշատակուած Ոփսիկիոնի հրամանատարք πατρίκιος տիտղոսը չեն կրեր։ Թէեւ 799ին Παῦλος πατρίκιος καὶ κόμης τοῦ 'Οψικίου կը յիշատակուի, սակայն յայտնի է թէ այս՝ Պաւղոսի

անձին հետ պատահական եղանակաւ յարած ստ-տիճան մըն է եւ ոչ՝ պաշտաման վրայ ի հարկէ կցուած։ Բուկելարիին ոչ շատ մեծատարած բանակաթեմին հրամանատարին Թ. դարուն ի պաշտօնէ Պատրիկ յորջորջուիլը շատ զարմանալի է, մինչդեռ անդին միեւնոյն ատեն յերեւան ելած եւ իւր հաւատարմութեամբը համբաւաւոր Թրակեսիոն բանակաթեմը զուրկ էր այս բարձրաստիճան տիտղոսէն։ Տարակոյս չկայ որ Բուկեղարացւոց եւ իրենց հրամանատարին 793ին պետութեան ցոյց տուած մեծ ծառայութիւնը՝ զիրենք այսպիսի վարձուց արժանացուց։

Այս ժամանակէն սկսեալ պետութեան մէջ շարունակեալ ձգտում մը կը տեսնուի մեծատարած հրամանատարութեանց սահմաններն ամփոփելու, որպէս զի չըլլայ թէ հրամանատարք շատ զօրանալով, թագաւորութեան եւս թեկն ածեն։ Լեւոն Գ.ի ատեն Թրակեսացւոց զօրաբաժնին Արեւելեան մեծ թեմէն անջատիլը վերը տեսանք. այժմ անկէ երկու ուրիշ սահմանագաւառք եւս կը բաժնուին, այսինքն՝ Կապադովկիա (հինն Կապադովկիա Բ.) եւ Սելեւկիա (հինն Իսաւրիա), որոնց կուսակալք՝ Արեւելեանէն բոլորովին անկախ հրամանատարութիւն ունէին։ Առաջինն առ Կոստ. Ծիր. կը կոչուի (վն. Թեմ. 20, 1 եւ 10) Կապադովկիա փոքր, որ այն ինչ զանուն թեմի զանձամբ էառ։ Բացայայտ եւս կը գրէ “վն. Վարչութեան պետութեան„ մէջ 224, 18, թէ յառաջագոյն Կապադովկիա Արեւելեան բանակաթեմին մէկ վաշտը (turma) կը կացուցանէր, որ յետոյ զատ գումարտակի կամ բանակաթեմի վերածուեցաւ։ Իսկ Սելեւկիա՝ անկախ ըլլալովն հանդերձ, երկրորդ կարգի հրամանատարութիւն ունէր միայն։ Ըստ հետեւորդի իւր կուսակալը ոչ թէ στρατηγός (հաստուածապետ), այլ պարզապէս χλεισουράρχης (սահմանապահ կոմս) կը յորջորջուէր։ Ասկէ բացա-

յայտ կը տեսնուի Սելեւկիա սահմանագլուխին՝ իւր "տասն ամրոցներովը", պետութեան համար ունեցած մեծ կարեւորութիւնը։

Վերջապէս Հայկական մեծ Բանակաթեմին ալ փոքր թեմի մ'ամփոփուիլն այս ժամանակները կ'իյնայ. Իրմէ կ'անջատուի՝ Սելեւկիոյ նման՝ Սահմանապահ կոմսի մ'իշխանութեան ենթարկուած Քարսիանոն թեմը, որ Ա. Գաղատիոյ եւ Ա. Կապադովկիոյ մասերէն կազմուած էր։ "Միջին կողմն աշխարհին (Գամրաց) անուանէր Քարսիանոն՝ յիշխանէ ումեմնէ Քարսիան կոչեցելոյ — որ ընծայեցոյց զանձն երեւելի ի պատերազմունս մղեալս ընդդէմ Պարսից." Կոստ. վսն. Թեմ. 20, 4։ Այս դիւանական աւանդութեան մէջ եթէ գտնուի իսկ պատմական բան մը, սակայն եւ այնպէս դժուարին է ժամանակը որոշել։ Թէոփիղեայ կամ Միքայէլ Արբշռի՝ Արաբներուն դէմ մղած պատերազմներուն վրայ կարելի չէ մտածել, ինչու որ ըստ իրեն խորդադբէի այս անուան գոյութիւնը առ նուազն մինչեւ Միքայէլ Թոթով կրնայ յետաձգուիլ։ Իրենեայ եւ Նիկեփորեայ ընդդէմ Արաբացւոց տուած ճակատներն ալ անյաջող ելք մ'ունեցած էին։ Ուստի եւ այս եղանակաւ կարելի չէ մեկնել։ Քարսիոնի՝ Հայկական թեմէն բաժնուելուն պատճառն ի հարկէ բոլորովին տարբեր բան մ'ըլլալու էր։

Կոստանդինոս կայսրը 15 Յունուար 793ին անմիտ ու անխորհուրդ գործ մը կ'ընէ, զԻրենէ՝ իւր մայրը, դարձեալ գահակալութեան ամբառնալով։ Այսպիսի նորութեան մը դէմ Հայկական թեմը խռովութիւն կը յարուցանէ եւ իւր ընդհ. հրամանատար զԱլէքսը, որ պաշտօնէն վար առնուելով Կ. Պոլիս կոչուած ու Պատրիկ տիտղոսն ընդունած էր[1], սպառնալեօք ետ կը պահանջէ։ Հետեւեալ

1 Թէոփ. 724, 8։ Այս շատ կարեւոր կտորէն կ'իմանանք թէ, Հայկական թեմին հրամանատարութիւնը՝ նոյն ատենները ոչ-Պատրիկաց եւս կը շնորհուէր։

տարին 793/94 իրաց վիճակը շատ աւելի կնճռեալ կերպարանք կ՚առնու. “Ցայսմ ամի լուեալ Հայոց, եթէ (կայսրն Կոստանդինոս) ետ խլել աչս զԱղեքսեայ, կալեալ զզօրավարս իւրեանց զԹէոդորոս եւ զԿամուլխանոս պատրիկ՝ արկին ի բանտ։ Իբրեւ զգաստ լինէր այսմ Թագաւորն, առաքէր իվերայ նոցա զԿոստանդինոս Արտաշիր զփոխանակ-անձնապահապետ իւր եւ զՔրիւսոքերէս զօրավար Բուկեղարացւոց, ընդ գունդս իւրաքանչիւր Թեմիցն, զի ի հնազանդութիւն զնոսա ածիցեն։ Իսկ Հայոց հարեալ նոցա ի դիմի, զերկոսին եւս զբռամբ ածին եւ կուրացուցին. բազումք անկան յերկոցունց կողմանց յառաջնում ամի ընդիկտիոնի, յամսեանն նոյեմբերի... Ցետ հանդիսի Ս. Զատկի՝ կայսրն զամենայն համօրէն դումարտակսն զիւրաքանչիւր Թեմիցն շուրջ զիւրեւ առեալ խաղաց գնաց ի վերայ Թեմին Հայոց մարտի պատերազմաւ։ Ի քսաներորդ եւթներորդ աւուր ամսեանն Մայիսի, յառաջնում ամի ընդիկտիոնի, յաւուր կիւրակէի Պենտակոստէից՝ հարան ընդ միմեանս. այլ նենգ գործեալ նիզակակցացն Հայոց մատնեցին զնոսա. եւ կալեալ (կայսեր) զպարտեալսն զամենայն, ետ հատանել զգլուխ զԱնդրոնիկեայ՝ անձնապահի եւ զնոցին վաշտապետի, զԹէոփիղեայ վաշտապետի եւ զԳրիգորի եպիսկոպոսի Սինոպեցւոց քաղաքին։ Իսկ զոմանս ի Թացեկոց անտի մատնեաց ի տանջանս եւ զայլս աքսորեաց։ Եւ հանեալ սրա բիւրաւորս յամրոցէ անտի (Կողոնիայ), եմոյծ զնոսա կապեալս ի քաղաքն ընդ դուռն Բղաքեռնացւոց։ Ի քսաներորդ չորրորդ աւուր Յունիս ամսոյ, յերկշաբաթւոջ, յերեսս իւրաքանչիւր ի նոցանէ սեւադեղով դրոշմեալ նշանակէ՝ ‘Հայ նենգաւոր, եւ ցրուէ զնոսա ընդ Սիկիլիա եւ ընդ այլ կղզիս։„ Թէոփ. 726, 5—727, 7։

Չարաբարոյ մօրն ազդեցութեան տակ եղող աննկարագիր կայսրը, իւր անձնական իշխանութեան ամենահաւատարիմ նեցուկներն ալ այս

եղանակաւ քայքայեց փճացուց։ Հայկական գումարտակին մէջ անթիւ անհամար հայազգի զօրականք կը ծառայէին։ Լեւոն Գ.ի ժամանակ, Արտաւազդ՝ իր հաստուածապետը, ինչպէս անունէն իսկ յայտնի է, ի ծնէ Հայ էր (Թերեւս Պահլաւունի։) Հայ նախարարք (σατράπαι) եւ ազատք (Ἄζατοι) Վրացւոց հետ հռոմէական այրուձիոյն (Καβαλλαρικὰ θέματα) ամէնէն ընտիր մասը կը կազմէին։ Արդ այս արի ու անվեհեր գունդը իր նախկին մեծութենէն բոլորովին մերկացած՝ տարաճանարկ կ'ըլլայ։ Հետ ու ըմբոստ զօրականներէ բաղկացած քանի մը ջոկատ Սիկիլիոյ ու արեւմտեան կղզեաց պատժոյ զօրանոցները կը ղրկուին, ուր զինուորական ծառայութիւնը մշտնջենաւոր պատերազմ մըն էր ի կեանս եւ ի մահ ընդդէմ սպանիական-ափրիկեան Կորսարաց։ Հայկական բանակին դէմ ձեռք առնուած այս խիստ միջոցներն ահա սկիզբ եղան, այն բանակաթեմին՝ քանի մը մասանց բաժնուելով, երկու նոր — Քարսիանոն եւ Խաղդիա (Պողեմոնեան Պոնտոս եւ Փասիսի մէկ մասը) — զօրաբաժիններու ծնունդ տրուելուն։ Քարսիանոն մինչեւ նոյն ատեն Հայկական թեմին մէկ վաշտն էր։ Անկախութեան բարձրացած այս զօրաբաժնի հրամանատարին պատուոյ աստիճանը՝ առ ժամս Սահմանապահ կոմս էր լոկ։ Հազիւ հարիւր տարի ետքը ընդհ. հրամանատարութեան աստիճանին կը բարձրանայ։ Կապադովկիոյ նահանգին Հայկական բանակաթեմէն անջատուելէն ետքը, Սեւ ծովու ծովեզերեայ արեւելեան երկիրներն ալ Հայկականէն զատուելով ուրոյն թեմ մը կը վերածուին՝ Խաղդիա անուամբ, որ նախնական ժամանակներէ հետէ ազգագրական տեսակէտէ առեալ մեծ նշանակութիւն ունեցող եւ միանգամայն շատ հին ազգերու բնակարան եղող այս ծովեզերքին անունն էր։ Այս զօրաբաժնին եւս հրամանատարը հաւանականագոյնս առաջնոյն պէս՝ Սահմանակոմս եղած պիտի ըլլայ։

Թ.

Խորասանցւոց գաւառներուն ունեցած զինուորական զօրութիւնը՝ ըստ Կոդամայի։

De Goeje Իբն Խորդադբեհի Հրատարակութեան ետեւը սա մէկ յաւելուածն ալ կցած է՝ „Extraits du livre de l'impôt foncier par Abou'l-Faradj Kodâma ibn Ga'far le secrétaire" (անդ. էջ՝ 144 ff). Աբու'լ Փարաջ Կոդամա իբն Ջաֆար բաղդադցին՝ իւր բիւզանդեան թեմերու համառօտութեանը մէջ պարզապէս Իբն Խորդադբեհի գիրքը ծայրաքաղ ընդօրինակած է. սակայն ինքն եւս իւր կողմանէ շատ կարեւոր յաւելուածներ վրան աւելցուցած է, որոնցմէ կ'իմանանք նոյն ժամանակուան իւրաքանչիւր զօրաբաժնին ունեցած զօրութիւնը։

Ա. Ցայսկոյս նեղուցի գտնուող երեք նահանգք.

| Անուն զօրաբաժնին | Զօրութիւնը |
|---|---|
| 1. Թարլա (բնագիրը՝ Թաեալա) | 24.000 զինուոր |
| 2. Տարակիա Հրմնորի. մր տակ | 5.000 „ |
| 3. (Մակադունիա) . . . . | կը պակսի։ |

Բ. Ցայնկոյս նեղուցի գտնուող տասնըմէկ նահանգք.

| Անուն զօրաբաժնին | Զօրութիւնը |
|---|---|
| 4. Աֆլաջունիա . . . . | 10.000 զինուոր (°) |
| 5. ալ-Ոպթիմատի . . . . | 4.000 „ |
| 6. ալ-Ոպսիկ . . . . . | 6.000 „ |
| 7. ալ-Թարգասիս . . . . | 6.000 „ |
| 8. ան-Նաթոլիկ . . . . | 15.000 „ |
| 9. Սալուկիա . . . . . | 5.000 „ |
| 10. ալ-Կաբադոկ . . . . | 4.000 „ |
| 11. Խարսանա . . . . . | 4.000 „ |
| 12. ալ-Բուկոլար . . . . | 8.000 „ |
| 13. ալ-Արմենիակ . . . . | 4.000 „ |
| 14. ալ-Խալդիա . . . . | 4.000 „ |
| Ընդ ամէնը . . | 70.000 զինուոր։ |

Բանակաթեմերու ամբողջական գումարը 60.000ը չ'անցնիր: Հոս այս համեմատական ցուցակին մէջ Պափղագոնիան եւս կը պակսէր. որուն de Goeje թէութեամբ 10.000 զինուոր վերագրած է: Սակայն Պաղագոնիոյ պէս աննշանակ ու վատահամբաւ զօրաբաժնի մը համար այնչափ բազմաձեան գունդ ենթադրելը՝ ըստ իս շատ չափազանց է: Պափղագոնիոյ զօրաբաժինը վատ էր. Τὸ δὲ θέμα τὸ καλούμενον Παφλαγόνων ἀρχαιότατον ἔθνος ἐστί καὶ ἐπίψογον, ἐπὶ ἀναισχυντίᾳ τε καὶ κακοτροπία διαβαλλόμενον. (Թեման որ կոչի Պափղագոնացւոց, է ազգ ինչ յիմար եւ խոտան եւ անուանի լրբութեամբն իւրով եւ նենգութեամբ). Կոստ. վասն Թեմ. 29, 5:

Եթէ այս բանակաթեմը իրապէս 10.000ի զօրութիւն ունենար, անշուշտ այլոց առջեւ աւելի մեծ վարկ ու համբաւ կը վայելէր: Յամենայն դէպս Պափղագոնիա սակաւաձեան զօրաբաժին մ'ունեցած պիտի ըլլայ: Ասոր ներհակ Հայկական բանակաթեմին համար միայն 4000 մարդ չափազանց անհաւանական է, նոյն իսկ եթէ ենթադրելու ըլլանք, որ այն բանակաթեմը իւր Է՞ եւ Ը՞ դարու սկիզբները ունեցած փայլը սակաւ ինչ նուազեցուցած էր: Սակայն Պատրիկ մը 4000 հոգւոյ վրայ հրամանատարութիւն չ'ըներ: Ուստի շատ հաւանական է, որ ընդօրինակողը յաջորդ Խաղդիա թեմին 4000ը, անմտադրութեամբ վերնոյն դրած ըլլայ: Ըստ հետեւորդի, ես Հայկական թեմին 4000ը կը փոխեմ 10.000ի. իսկ Պափղագոնիոյ կը թողում 4000 միայն. ասով՝ ասիական երեք Պատրկաց հրամանատարութեան տակ կը գտնուին, ասիական երեք մեծագոյն գումարտակք, այսինքն՝

| | |
|---|---|
| Արեւելեան . . . . . . | 15.000 |
| Հայկական . . . . . . | 10.000 |
| Բուկեղարիոն . . . . . . | 8.000 |

Վերջապէս կոդամա այս զօրաբաժիններու մասին հետեւեալ ծանօթութիւնն ալ կու տայ de Goeje էջ 199. Մահմետական պետութեան դիմաց ճակատ առ ճակատ կեցած այս տասնումէկ նահանգաց մէջ գտնուող ձիաւոր ու ոտանաւոր զօրաց ամբողջական գումարը 70.000ի կը հասնի, առանց գուգաղն ի միասին հաշուելու:

Իբն Խորդադբէի (հմտ. de Goeje էջ 88 ff.) Պատրիկներու մասին տուած տեղեկութիւնն ալ շատ կարեւոր է. իւր ըսածին համաձայն վեց Պատրիկ Կոստանդնուպոլիս եւ վեցը նահանգները կը նստէին: Անոնց երեքը, այսինքն՝ Ամուրիայի, Անկիւրիոյ եւ ալ-Արմինիակի Պատրիկները, յայնկոյսներուցի գտնուող թեմերու (περατικὰ θέματα) կը վերաբերին: Բուկեղարիոն թեմին զօրավարին Պատրկութեան բարձրանալը հաւանական է թէ 793/4 թուականին այն զօրաբաժնին զօրավար Քրիստոփորեայ՝ Հայոց գումարտակին մէջ ծագած ապստամբութեան զսպուելուն համար ըրած մեծ ծառայութեանցը փոխարէն տրիտուր մ'եղած պիտի ըլլայ: Կոստանդինէ ու Իրենէէ այնպէս խստագոյնս պատուհասակիր եղած հայազունդ գումարտակը կ'երեւայ թէ իւր հայրենակից — Լեւոն Ե.ի (813–820) առջեւ դարձեալ շնորհք կը գտնէ: Ինքը գահը բարձրանալէն ետքը՝ զՄանուէլ, Միքայէլի տաղանդաւոր որդին, որ Ռանգաբեան անկած տան անձնատուր էր եղած, Պատրիկ տիտղոսով կը պատուէ. καὶ Μανουὴλ δὲ τὸν Μιχαὴλ πρωτοστράτορα πατρικίοις ἐγκαταλέξας καὶ στρατηγὸν τιμήσας τῶν Ἀρμενίων, „οὐκ ἔδει σε“ ἔφη „πρὸς τὸν κατ' ἐμοῦ ὁπλίζεσθαι πόλεμον, σύμβουλον τοῦ βασιλέως καὶ τῆς Προκοπίας γενόμενον. Թէոփ. Շար. 24, 2 ff. Իբն Խորդադբէի ասիական բանակաթեմերու մասին պատմածներուն ստոյգ ըլլալուն նշանաւոր ապացոյց մ'ունինք — Թրակեսեան

թեմի զօրավարին, Թէոդորայ կայսրուհւոյն ու Վարդայ եղբօր — Պետրոնեայ՝ 863ին Եփեսոսի մօտ, Պոսոն գիւղի ու Լալական գետի քով եւ Գիւրիսեան դաշտի վրայ ընդդէմ Արաբացւոց տարած մեծ յաղթութեան ստորագրութիւնը։ Պատմագիրն այս դէպքը ճշդիւ ու մանրամասն կը ստորագրէ.

“Երբ Պետրոնաս կ՚իմանայ, թէ թշնամին այս կողմը բանակ զարկած է, իւր առաջին ջանքը կ՚ըլլայ՝ անոր փախստեան ամէն ճամբաները գրաւել բռնել։ Ուստի եւ շուտ մը Հայկական ու Բուկեղարեան գումարտակներու զօրավարները՝ գողոնիացի ու պափղագոնացի գնդերու հետ հիւսիսային կողմը կը կարգէ։ Հարաւային կողմը կը կեցնէ Արեւելեան, Ոփսիկիոն ու Կապադովկիոյ գումարտակներու զօրավարները, Սելեւկիոյ ու Քարսիանոն սահմանակալութեանց զօրաբաժիններովը։ Իսկ արեւմտեան կողմն ինքը կը բռնէ չորս կայսերական անձնապահ գնդերու, Թրակիոյ ու Մակեդոնիոյ զօրավարներուն հետ, որոնք սովոր էին Բուլղարաց հետ խաղաղութիւն եղած ատեն, ասիացի գնդերու հետ միացած պատերազմելու. ասոնցմէ զատ Թրակեսեան գումարտակն ալ իւր հետն էր առած։„ Թէոփ. 181, 9—20։ Այս չորս τάγματα βασιλικά (կայսերական գունդք) ըսուածը կը համապատասխանէ Կոդամայի[1] յիշատակած կայսերական անձնապահաց չորս τάγματα՝ χαβαλλαριxά

[1] Կոդամա՝ իւր Կիտաբ ալ Խարաջ անուն մատենին մէջ (Հմտ. de Goeje Bibliotheca geographorum Arab. P. VI) էջ 196 ff. հետեւեալը կը գրէ Կ. Պոլիս նստող գնդերու մասին. “Կոստանդնուպոլիս, արքայանիստ քաղաքը կեցող զօրաց թիւը 24.000 կը հաշուուի, որոնց 16.000ը ձիաւոր եւ 8000ը հետեւակ են։ Ձիաւորները չորս գնդի կը բաժնուին։ Առաջինը՝ 4000 հոգւով կը կացուցանէ Սխոլարեան գունդը, մեծ Դոմեստիկի հրամանատարութեան տակ, միեւնոյն ժամանակ նաեւ ընդհ. հրամանատար է բովանդակ

= Ձիաւորաց գնդերուն: Թէոփանեայ պատմածին՝ Կոդամայէն ունեցած տարբերութիւնը միայն սա-չափս է, որ Խաղդիա թեմին անունը Հոս կը պակսի, բայց անոր տեղ դրուած է Կողոնիա: Սակայն կարելի չէ ենթադրել, թէ Կողոնիա՝ Խաղդիա թեմին ուրիշ մէկ անունն ըլլայ, վասն զի յետագայ ժամանակները Կողոնիա թեմը կազմող երկիրները՝ Իբն Խորդադբէի ժամանակ տակաւին Հայկական բանակաթեմին կը վերաբերէին: Կողոնիա դեռ վերջնոյն մայրաքաղաքն էր, մինչ արդէն Խաղդիա՝ Հայկական բնակաթեմին քով գոյութիւն ունէր իբր զատ եւ ուրոյն բանակաթեմ: Հաւանականագոյնս Κολωνείαի յաջորդող [καὶ Χαλδίας] անունը պարզապէս աչքի վրիպմամբ ինկած պիտի ըլլայ: Կողոնիայի՝ զատ բանակաթեմի վերածուիլը, յամենայն դէպս Թէոդորայի առենները կրնայ պատահած ըլլալ: Երկու զօրաբաժիններու այրուձին գրեթէ միշտ իրարու հետ միացած կը յիշատակուին: Այսպէս Բարսեղ Մակեդոնացին զանոնք միասին կը ղրկէ, ընդ մէջ Եփրատայ եւ Արածանւոյ արշաւանք գնելու. ἰδίᾳ δὲ τοὺς Χάλδους καὶ Κολωνειάτας τὴν μεταξὺ χώραν Εὐφράτου καὶ Ἀρσίνου κελεύσας καταδραμεῖν. Թէոփ. Շար. 269, 16:

---

բանակին եւ կարգադիր զօրաժողովներու: Երկրորդ գունդը նոյնպէս 4000 հոգւով, կը կոչուի — Ցախոս: Դրունգարիը հրամանին տակ գտնուող՝ նմանապէս 4000է բաղկացած երրորդ — Եկսկուբիտք (ἐξκούβιτον) գունդը կը ներկայացընէ անձնապահաց դասը: Չորրորդը Սկուտարեանք՝ 4000 հոգւով, որոնք թագաւորին ճամբորդութեանցը միշտ կ'ընկերանային: Հետեւակազօրն երկուքի կը բաժնուի, մին կը կոչուի՝ Ոպտիմատէս, միւսը՝ Նումերա. իւրաքանչիւրը 4000 հոգւով": Այս անուանց մեծագոյն մասին ձեւը ենթադրական է. վասն զի յոյն անուանց արաբական բնագրէն ընթերցումը տառերու սխալ կիտադրութեանց պատճառաւ, շատ դժուարացած է:

## Ժ.

## Ասիական Թեմերու գաւառները՝ ըստ Խորդադբէի եւ Կ. Ծիրանածնի։

Խորդադբէ գրեթէ ամէն մէկ նահանգին գլխաւոր քաղաքն եւ միւս ամրոցաց թիւը կը նշանակէ։ Եթէ ասիական թեմերուն մասին Խորդադբէի աւանդածները՝ Կ. Ծիրանածնի գրածներուն հետ համեմատելու ըլլանք, շատ մեծ համաձայնութիւն այս երկուքին մէջ կը տեսնենք։ Խորդադբէի ամրոց անուանածները՝ Ծիրանածնի քով πόλεις ἐπίσημοι (նշանաւոր քաղաքք) նշանակուած են։ Ահա երկուքին համեմատական տախտակը՝

### Պափլագոնիա.

որ հինգ ամրոց ունի. (Խորդադբէ։)

Պափլագոնիոյ նշանաւոր քաղաքներն ասոնք են՝ 1. Գանգրա՝ մայրաքաղաք. 2. Ամաստրա, 3. Սորա, 4. Դադիբրա, 5. Յոնոպոլիս, 6. Պոմպէուպոլիս Կ. Ծիր. էջ 30։

### Ոպտիմատոն.

Այս նահանգն ունի տասը ամրոց եւ Նիկոմեդիա... քաղաքը։

Ասոր նշանաւոր քաղաքներն են՝ 1. Նիկոմեդիա՝ մայրաքաղաք. 2. Հեղենոպոլիս, 3. Պրենետոս, 4. Աստակոս, 5. Պարթենոպոլիս. էջ 27։

### Ոփսիկիոն.

ունի տասը ամրոց եւ Նիկիա անուն քաղաքը։

Ոփսիկիոն անուանուած թեմին ունեցած նշանաւոր քաղաքներն ասոնք են՝ 1. Նիկիա՝ մայրաքաղաք, 2. Կոտիւէոն, 3. Դորիւլէոն, 4. Միդէոն, 5. Ապամէա, 6. Միւրլէա, 7. Լամփսակոս, 8. Պարիոն, 9. Կիւզիկոս, 10. Աբիւդոս. էջ 26։

Իբն Խորդադբէ առանց մայրաքաղաքի տասը քաղաք կը հաշուէ։

Թրակեսեան թեմին համեմատութիւնը չենք կրնար ընել, վասն զի Իբն Խորդադբէ՝ Եփեսոսէ զատ միայն չորս ամրոց կը նշանակէ, մինչդեռ Կոստանդին՝ 21է աւելի, որոնց մէջէն դժուարին է 4 զինուորական ամրոցները ստոյգ որոշել։ Նմանապէս Արեւելեան բանակաթեմին մէջ՝ Ամուրիա քաղքին հետ 4 ամրոց եւ դեռ ուրիշ 30 բերդ կը յիշատակէ։ Կոստանդնի համեմատական տախտակը հոս զմեզ թողլէք կ'ընէ։

Քարսիանոն.

Բաց ի Խարշանա (خرشنة) գլխաւոր քաղքէն, ուրիշ դեռ չորս ամրոց ալ ունի։

Առաջին կուսակալութեան (Քարսիանոն) մէջ չորս նշանաւոր քաղաք կայ. 1. Կեսարիա՝ մայրաքաղաք, 2. Նիւսա՝ քաղաք, 3. Թերմա, 4. Հռեգեպոդանդոս. էջ 20։

Ասոնք Հիերոկղեայ՝ Ա. Կապադովկիոյ մէջ յիշատակած քաղաքներն են։ Քարսիանոն թեմը (սահմանագաւառը) Թ. դարուն՝ Ա. Կապադովկիոյ ունեցած տարածութեանը կը համապատասխանէր։ Լեւոն Զ. Փիլիսոփան (886—911) Բուկեղարիոն եւ Հայկական թեմերէ մեծատարած երկիրներ կտրելով՝ Քարսիանոնի հետ կը միացընէ։

Բուկեղարիոն

Հոս կը տեսնուի Անկիւրա քաղաքը. Սամալա եւ տասնուիրեք ամրոց։

Բուկեղարիոն թեմը կազմող քաղաքներն են՝ 1. Անկիւրա մայրաքաղաք Գաղատացւոց, 2. Կղաւդիուպոլիս՝ այս եւս մայրաքաղաք Մարիանդիւնացւոց, 3. Հերակղիա, 4. Պրուսիաս, 5. Տէիոն. էջ 28։

Լեւոն քրիստոսասէր կայսեր ժամանակ Կապադովկիոյ փոխանցուեցան Բուկեղարիոն թեմին հետեւեալ զինուորական շրջանակները (βάνδα). տեղակալու-

թիւն* (τοποτηρησία) Բարեւոյ, տեղակալութիւն Բաղբադոնեայ, տեղակալութիւն Աոպոնայ եւ տեղակալութիւն Ակարբեայ. վասն Վարչ. պետ. 225,5:

(Նոյն) Լեւոն քրիստոսասէր կայսեր օրով, Բուկեղարիոն թեմէն՝ Քարսիանոն թեմին փոխանցուեցան հետեւեալ զինուորական շրջանակները. տեղակալութիւն Միւրիոկեփաղեայ, տեղակալութիւն սրբոյ Խաչի եւ տեղակալութիւն Բերինուպողեայ. որոնցմով կազմուեցաւ զինուորական վիճակ մը (τοῦρμα), որ այժմ Սանիանա կ'անուանուի (Կոստ. անդ. 225. 15):

Ուրեմն Բուկեղարիոն թեմը՝ յառաջ քան Լեւոն Զ.ի ըրած նորոգութիւնքը, 5 քաղաք, 4 զինուորական վիճակ կամ տեղակալութիւն + 3 զինուորական վիճակ կամ տեղակալութիւն ունէր, ուստի եւ ընդ ամէնը կ'ըլլայ 12 զին. վիճակ: Եթէ Իբն Խորդադբէի թուերը ճիշդ են, մեզի երեք անուն դեռ կը պակսի:

Հայկական բանակաթեմ.

Ունի Կոլոնիա եւ Կապադովկիա Գ., որ այժմ տասնուվեց ամրոց: Հայկական բանակաթեմ կը կո–

* Բանակաթեմը կը բաժնուէր զինուորական վիճակներու, վիճակը՝ կը ստորաբաժանուէր դարձեալ զին. շրջանակներու կամ գաւառակներու, որոնք տեղակալութիւնք կ'անուանուէին: Du Cange իւր միջին դարեան կամ ոչ-դասական յունարէն լեզուի համար հեղինակած սքանչելի Բառարանին մէջ տեղակալութիւն բառն ասանկ կը մեկնէ. Τοποτηρησία = Vicariatus. Scribit Porphyrogenitus lib. I. de Them. c. 16. *Στρατηγίδας*, seu Thematum et provinciarum praefecturas divisas fuisse *εἰς τούρμας*, turmas vero *εἰς βάνδα, ἤτοι τοποτηρησίας*... Հմմտ. անդ նաեւ *βάνδον* եւ *τούρμα* բառերուն մեկնութիւնը: Ծ. Թ.

չուի, եօթը քաղաք ունի. Ամասիա, Իբօրա, Զաղիքոս, Անդրապա, Ամիսոս. Նէօկեսարիա. Սինոպէ. էջ 21,5:

Կողոնիա անառիկ եւ սեպ ամրոց մըն է. եւ այս փոքրիկ քաղքին անուամբը երկիրն ալ Կողոնիա կը կոչուի .. Սկիզբն է՝ Փոքր Հայք, սկսելով Նէօկեսարիա քաղքէն եւ Փաղակրոս անուն լեռնէն, կը տարածուի մինչեւ Արաւրակացւոց քաղաքը... եւ կը հասնի մինչեւ Նիկոպոլիս եւ Տեփրիկէ ...Այս է Կողոնիան. վըն. Թեմ. 31,7:

Սեբաստիա թեմն ալ նմանապէս Բ. Հայքէն կը սկսի. վըն. Թեմ. 32,2:

Լեւոն քրիստոսասէր կայսեր ժամանակ... Հայկական բանակաթեմէն՝ Քարսիանոն բանակաթեմին անցուեցան հետեւեալ զինուորական վիճակները. տեղակալութիւն Կամոդրամեայ, տեղակալութիւն Տարիայ. վան Վարչ. 225.6:

Լեւոն քրիստոսասէր կայսեր ժամանակ, Լարիսա՝ Սեբաստիոյ մէկ վիճակն էր. վան Վարչ. 227,6:

Կամախ վիճակը՝ Կողոնիայի բերդն էր. վան Վարչ. 226,8:

Կողոնիան եւս հաշուին մէջ առնելով՝ 16 քաղաք կ'ունենանք, ուստի եւ Իբն Խորդադբէի նշանակած թուէն մէկ պակաս, եթէ վերջինս սխալմամբ Կողոնիան հաշուէն դուրս ձգած չէ:

Խաղդէա.

Վեց ամրոց ունի:

Խաղդիա անուանուած թեմն ու Տրապեզուս մայրաքաղաքը՝ գաղթականութիւնք են Հելլենացւոց. վըն. Թեմ. 30,9:

Եկեղեաց գաւառը Խաղդիոյ կը վերաբերէր. վան Վարչ. 226,9:

**Ներքին եւ միջին կողմերը՝ Փոքուն Հայոց սահմանագլուխներն են։ Ասոր կը վկայեն ինքնին իսկ իրենց անունները. Եկեղեաց. Սպեր եւ Խոզան*. վասն Թեմ. 30, 11։**

---

* *Մեծ Հայոց այս երեք գաւառներուն անուանց ձեւերը յոյն բնագրին մէջ շատ խանգարուած են: Առ Կոստանդեայ վսն. Թեմ. 30, վսն. Վարչ. 186, 187, 226 եւն ստէպ յիշատակուած Κελτζηνή անունը, որ սկզբնատառ 'Α կամ 'Ε ձայնաւորին կորստենէն զատ՝ բուն նախնական տիպարէն շատ մեծ խոտորում մը չի ցուցըներ, քովը յիշատակուած միւս գաւառներուն տեղագրական դիրքէն հետեւցընելով, կը համապատասխանէ Բարձր Հայոց՝ Եկեղեաց գաւառին: Արտաքին մատենագրաց (Ստր., Պտղոմ., Պրոկ. եւն) ծանօթ է այս գաւառը 'Ακιλισήνη կամ 'Ακιλησήνη անուամբ: Συιρίτης անուան մէջ — որ նոյն է Բարձր Հայոց Սպեր գաւառին հետ — եթէ ուղղակի սոյն անուան յունականացած Συσπιειρίτις (Ստր. ԺԱ.) ձեւին աղաւաղումը չէ, յայտնի կը տեսնուի յն. π = պ տառին սխալմամբ υի փոխուած ըլլալը:*

*Դժուարին է Կոստանդնի քով անգամ մը միայն յիշուած Γοιζάνον անծանօթ գաւառին աշխարհագրական դիրքն որոշել: Եթէ հնչման նայինք, շատ կը մերձենայ Վանայ ծովու հարաւային կողմը գտնուող արդի Խիզան գաւառակին, եւ կարելի իսկ էր իրարու հետ նոյնացընել, եթէ տողագրութեան համապատասխանէր: Կայսեր ըրած տեղագրութեան համաձայն, Փոքուն Հայոց եւ Խաղտեաց թեմին սահմանագլխոց կից ըլլալու են այս վերոյիշեալ գաւառները. ապա ուրեմն Բարձր Հայք եւ Չորրորդ Հայք կարելի է միայն խնդրեալ գաւառին տեղը փնտռել: Սակայն միւս կողմանէ Մատենագիրը նաեւ Խոզան (τὸ τοῦ Χοζάνου) անուան վսն. Վարչ. 226,3. անծանօթ չըլլալուն, ի հարկէ կը ստիպուինք համարելու, թէ հոս երկու իրարու սակաւ ինչ նոյնահնչիւն անուանց շփոթում մը տեղի ունեցած պիտի ըլլայ: Բայց այս շփոթումը ո՛չ թէ Խոզան եւ Խիզան անուանց մէջ որոնելու ենք, այլ բոլորովին զատ*

Տրապեզոս եւ Եկեղեաց գաւառն իրապէս Խաղդիոյ կը վերաբերէին. իսկ միւս մնացածները գուցէ թէ Տրապեզեայ իշխանութեան տակ եղող եպիսկոպոսութիւններէ ըլլան, Հմմտ. Գէորգ Կիպր. Հրտ. Հ. Գելցէր 1642 ff. ὁ Χεριάνων, ὁ Χαματόζουρ, ὁ Χάλ, ὁ Παίπερ (այժմ Բայբուրդ), ὁ Κεραμέων, ὁ Λερίου, ὁ Βιζάνων. (Ուստի եւ Յուստինիանուպոլիս անունը դարձեալ անգործածական եղած էր։)

Սեւէ-կէ-.

Այս նահանգին Սելեւկիոյ·նեղքին եւ միջին մաՃէջ կայ Սալուկիա սերը Դեկապոլիս կը կոչուին եւ

---

*տեղ։ Ս. Գրոց տեղեակ կայսր մատենագիրը Խաղդիա անուան ծագման վրայ խօսելով, այսպէս կը ստուգաբանէ. "Զայս (այս է՝ եթէ սահմանակից Փոքուն Հայոց իցեն) հաւատարիմ առնեն եւ անուանքն իսկ նոցա՝ Եկեղեաց, Սպեր եւ Խոզան (Γοιζάνον) զորոց վկայեն եւ սուրբ Գիրք, ի Դ. Թագաւորութիւնս։ Յորժամ Ասորեստանեայք զբնակիչս Սամարիայ ի գերութիւն վարեցին, բնակեցուցին զնոսա զգետովն Գովզանայ։ Այլ զԽաղդիա անունն՝ ի Պարսից եւ յառաջին գաւառէ անտի իւրեանց – ի Քաղդիայ, ընկալան, յորմէ եւ անունն իսկ նոցա. (վրն. Թեմ. 30, 11—17։) Այս ծիծաղելի ստուգաբանութեամբ Կոստ. Խաղդիան կը փոխադրէ մինչեւ Մարաց աշխարհը։ Դ. Թագաւորութեանց մէջ ԺԷ. 6. կը կարդանք "Բնակեցոյց զնոսա... զգետովն Գովզանայ եւ զլերամբքն Մարաց (լտ.* juxta fluvium Gozan, in civitatibus Medeorum*). Արդ ո՞վ չի տեսներ Կոստանդնի աշխարհագրական սխալ դիտողութիւնը, որով երկինք ու երկիր իրարմէ հեռաւորութիւն ունեցող՝ Գովզան գետը, որ Կասպից ծովը կը թափուի, համեմատութեան կը բերէ, կամ ճիշդ եւս կը նոյնացնէ մեր Խոզան գաւառին հետ, Եկեղեացը՝ Ալաթայ ('Αλαέ). իսկ Սպերը՝ Աբովրայ ('Αβώρ)։ Անուանցս մասին հմմտ. Դ. Թագաւորութեանց ԺԷ, 6։ Հմմտ. նաեւ* Brosset, Deux historiens arméniens etc. *էջ 222, ծն. 1։*

*Ծ. Թ.*

եւ ուրիշ տասը ամրոց:

են՝ 1. Գերմանիկուպոլիս, 2. Տիտիուպոլիս. 3. Դոմետիուպոլիս. 4. Զենոնուպոլիս. 5. Նէապոլիս, 6. Կլաւդիուպոլիս, 7. Իրենուպոլիս, 8. Կեսարիա, 9. Ղաւզադոս, 10. Դալիսանդոս:

Կ-դ-ջ-[illegible]-ա:

Իբն Խորդադբէ՝ նահանգներուն ստորագրութեանը մէջ ընդհանրապէս միայն մայրաքաղաքները յանուանէ կը յիշատակէր, իսկ ամրոցներուն միայն թիւը նշանակելով կը գոհանար. ընդհակառակն Կապադովկիոյ սահմանագլուխին ստորագրութեանը մէջ՝ քաղաքաց անուններու բազմութիւն մը ետեւէ ետեւ կը շարէ.

1. Կորա φρούριον τὸ καλούμενον Κόρον վմն. Թեմ. 21,5:

2. Հաւրին (حصن) = Հիսն ու-Սաքալիբա (Սլաւաց դղեակ).

3. Անթիգուա.

4. Ալ-Աջրաք.

5. Դու՛լ Քիլա՛ կամ Ջասաթրուն = Հերակլիա-Կիւբիստրա, տ. էջ 84:[1] Ասոնցմէ զատ դեռ 14 ամրոց կը յիշատակէ, որոնց մէջէն Մաթամիր երկրին մէջ կը գտնուին՝

6. Մաջիդա.

7. Բալանսա (Բալիսա).

8. Մալանդասա.

9. Կունիա.

10. Մալակուբիա = Մալակոպէա (Թէոփ.)

11. Բադալա (Թավալա) = Անդաբալիս.

12. Բարբաւա.

13. Սալամուն:

---

[1] Համմ. նաեւ Ramsay, the historical geography of Asia Minor p. 340 ff. ուր արաբացի աշխարհագիրներէ յիշատակուած կարգ մ՚անուանց կը ջանայ համեմատել, սակայն առանց որոշ հետեւութեան. Դու՛լ Քիլա՛ի մասին տուած մեկնութիւնը բոլորովին սխալ է:

Անուանց ձեւերուն ընդօրինակութեանցը մէջ առէպ սխալներ սպրդած են. բայց որովհետեւ Արաբացիք իրենց ծանօթ վայրերուն սովորաբար տարբեր անուններ կու տային, այս պատճառաւ ալ շատ դժուարին է զանոնք բուն տեղացի անուանց հետ միաբանելը: Կոստանդին (վրն. Թեմ. 21,3) Կորոն ամրոցէն զատ կը յիշատակէ նաեւ հետեւեալ քաղաքները. Տիանա, Փաւստինուպոլիս, Կիւբիստրա, Նազիանզոս, Երիւսիմա (կարդա՛ Սասիմա), Պառնասոս, Հաւեդեդովրա, Մովկիսոս եւ Կորոն անուանեալ բերդը: Դարձեալ (վրն. Վարչ. 225,23) երկու շրջանակ (Banda) կը յիշատակէ, որոնք երբեմն Կապադովկիոյ թեմին կը վերաբերէին, զորոնք յետոյ Լեւոն, իր հայրը, Քարսիանոնի հետ միացուց. *ἀπὸ δὲ τοῦ Καππαδοκῶν εἰς τὸ τοῦ Χαρσιανοῦ θέμα ταῦτα τὰ βάνδα μετετέθησαν, ἤτοι ἡ τοῦρμα Κασῆς ἐξ ὁλοκλήρου καὶ ἡ τοποτηρησία Νύσσης μετὰ τῆς Καισαρείας.*

Իբն Խորդադբէէ գրուած պետութեան ստորագրութեան մէջ ծովային երկու բանակաթեմերու — Եգէականի եւ Կիբիւրէոտնի — մասին ամենեւին յիշատակութիւն չըլլալը զարմանալի երեւոյթ է: Յամենայն դէպս ասիկա մոռցուած բան մը չի կրնար ըլլալ: Ը. դարու եւ Թ. ին սկիզբներն եղած կայսերք՝ գրեթէ ամէնքն ալ, ասիական բանակին աւագանւոյն կը վերաբերէին: Հարստութեանց հիմնադիրք ու յափշտակիչք, ինչպէս՝ Լեւոն Իսաւրացին, Արտաւազդ, Լեւոն Հայ, Միքայէլ Թոթով եւ Թովմաս, ասիական բանակին բարձրագոյն անձնաւորութիւններն էին, որոնք իրենց քաջարի այրուձի գնդերովը՝ Փոքր Ասիոյ խարազան՝ Արաբացիները ետ վանած էին: Հետեւակազօր հռոմայեցի գնդերը մեծապէս վնասուած ու տկարացած էին Հերակղեայ ատեն յերեսաց Բեդուիններու, հետեւաբար այլ եւս անզօր էին Արաբացւոց

անդուլ յարձակմանց առջեւն առնելու։ Բիւզանդեան նորակազմ հեծելազօր գնդերը (Καβαλλαριχὰ θέματα) եւ իրենց քաջ պաշտօնակալները, որոնք մեծաւ մասամբ փոքր ասիացի, հայ ու վրացի էին, Աբասեանց դրօշին դէմ պատերազմիլը յանձն կ'առնուն, զոր եւ յաջողութեամբ ի գլուխ կը հանեն։ Իսկ նաւային զօրութիւնը բոլորովին թողլքեր եղած էր, որուն հետեւութեամբը ոչ միայն Կրետէ կղզին՝ Միքայէլ Թոթովլի ատեն ապանիացի Կորսարաց ձեռքն անցաւ, այլ եւ ոչ Սիկիլիան՝ ընդդէմ Բարսեղ Մակեդոնացւոյն այն կարեւոր նահանգին պաշտպանութեանը համար գործադրած դիւցազն միջոցներուն, կրցաւ իւր գոյութիւնը պահել։ Անշուշտ ծովային թեմերու այս վիճակն աչքի առջեւ ունենալով՝ զանոնք յիշատակութեան արժանի համարած պիտի չըլլայ։

## ԺԸ.

### Երկակողմանի պատերազմ մղելու եղանակը։

Արաբացի եւ յոյն աղբերաց՝ երկակողմանի պատերազմելու արուեստին եղանակին վրայ տուած տեղեկութիւններէն կ'իմանանք թէ, Ը. եւ Թ. դարուն Խաչի եւ Կիսալուսնի միջեւ մղուած պատերազմները պարզապէս ձիաւորաց մարտակռիւներ էին։ Կոդամայի բանծին նայելով, Արաբացիք՝ պաշտպանողական յօրինուածութեամբ լաւ ամրացած հռոմէական պետութիւնը գրաւել փորձելու յանդգնութիւնը չունէին, սակայն ասպատակ սփռելու համար մեծամեծ պատրաստութիւններ շատ անգամ կը տեսնէին։ Կոդամա էջ 199 հետեւեալը կը գրէ. "Հիմայ մեր՝ թշնամեաց երկրին մէջ կատարած ասպատակութիւններէն մին ստորագրեմ, որպէս զի ընթերցողն անոր վրայ մեկին գաղափար ունենայ։ Սահմանաբնակ ժողովրդոց փորձառուներէն շատերուն բանծին համաձայն,

յարձակումը՝ որ բանակի մեծ զօրութիւն կը պահանջէ, գարնանային ժամանակները կ՚ըլլուի։ Առապատակութիւնը Այեար (Մայիս) ամսոյն 11ին կը սկսի, երբ ձիերը գարնան գալար ճարակով լաւ ճարակած կ՚ըլլան, եւ 30 օր կը տեւէ, այսինքն Այեարի մնացած օրերը եւ Հազիրանի (Յունիս) տասն օրերը։ Այս միջոցին Հռոմէական երկիրներուն մէջ առատ խոտ կը գտնուի, այնպէս որ ձիերը երկրորդ գարուն կը վայլեն հոն։ Ի դարձին, 25 օր՝ որ է ըսել Հազիրանի մնացած օրերը եւ Թամմուզի (Յուլիս) հինգ օրերը, ձիերը խնամելով ու զանոնք պարարելով կ՚անցընեն։ Յետոյ իրարու հետ կը միանան ամառնային ասպատակութիւններն ընելու, որ 60 օր կը տեւէ, Թամմուզի 11էն սկսելով։

Ձմեռուան ասպատակութեանց մասին փորձառու անձինք կ՚ըսեն թէ, կարեւոր հարկը եթէ զայն պահանջելու ըլլայ, զգուշանալու է թշնամւոյն երկիրը շատ խորամուխ ըլլալէ. բաւական է, եթէ 20 օր տեւէ արշաւանքը, չուն ու դարձն ի միասին, այնպէս որ իւրաքանչիւր զինուոր իրեն հարկաւոր եղած պաշարը իւր ձիուն վրայ բեռնաւորել կարենայ։ Դարձեալ, այս ասպատակութիւնները Շուբաթ (Փետրուար) ամսոյն վերջերը ու Ազարի (Մարտ) սկիզբները սկսուելու են, ինչու որ այս ատենները թշնամին — հետեւակ ու այրուձի, շատ խեղճ վիճակի մէջ կը գտնուի, մինչդեռ անդէից մեծաքանակ բազմութիւն մը հոն կը տեսնուի։ Մեր զօրքերը փութով պէտք են ետ դառնալ, որպէս զի ձիերն արօտ հանեն։„

Ասոր հետ համեմատութեան բերենք Նիկեփորոս կայսեր՝ Արաբացւոց այս ասպատակութեանց դիմաց, Յունաց բռնած դրից մասին մեզի պատմածը. "Երբ որ հօծ բազմամբոխ բանակի մը հանդերձանաց եւ չուին լուրը կ՚առնունք — սակ սովորաբար Աւգոստոս ամսոյն կը հանդիպի — մեծախումբ բանակներ զօրաժողով կ՚ըլլան։ Վասն

զի այս ամսոյն մէջ գունդագունդ գումարտակներ Եգիպտոսէ, Պաղեստինէ, Փիւնիկէէ եւ Խորին Ասորիքէ դէպ ի Կիլիկիա եւ Անտիոքայ ու Հալէպի շրջակայքերը կը համախմբուին, եւ Սեպտեմբեր ամսոյն Արաբացւոց հետ եւս միանալէն ետքը, հռոմէական պետութեան վրայ կը սկսին արշաւել: Արդ թշնամի գումարտակներու ի մի համախըմբուելու ժամանակը պէտք է ստէպ ստէպ սուրհանդակներ եւ Հայոց Տասնակիք[1] (յն. τασιναρίους) անուանած մարդիկը, եւ դեռ ուրիշ շատ մը վստահելի ու յաջողակ լրտեսներ ղրկել: Վաճառականներու եւս մասը թողլու է: Դարձեալ բարեկամ կեղծաւորուելու է մեզի սահմանակից լերանց վրայի դղեակներուն (χάστρα) հրամանատար — էմիրներու: Անոնց նամակ եւ պարգեւներով ծառաներ ղրկելու է: Այսպիսի բազմաձեւ ու բազմակերպ ճարտարութեամբ շատ անգամ կարելի է թշնամւոյն ծրագիրն ու դիտաւորութիւնը, ի մի գումարուած ձիաւոր ու ոտանաւոր զօրաց համարը, զօրավարաց անունը եւ երկրին որ կողմն արշաւանք ընելու ունեցած միտքն ստոյգ իմանալ: Արդ՝ յարձակողական բանակին ընելու շարժման վրայ ապահով տեղեկութիւն ընդունելէն ետքը, բոլոր

[1] τασινάκια համմ. 189, 2 ἀπὸ τῶν ἀποστελλομένων κατασκόπων χρὴ τὰς κινήσεις τῶν φοσσάτων αναμανθάνειν, καὶ τραπεζίτας ἐπιλέγεσθαι γενναίους καὶ ἀνδρείους οὓς οἱ Ἀρμένιοι τασιναρίους καλοῦσι καὶ ἐν τοῖς ματρικίοις ἀπογράφεσθαι, καὶ ἀρχηγοὺς αὐτοῖς ἐφιστᾶν, οἷς, πρὸς τῇ ἀνδρείᾳ, καὶ πολλὴ ἐμπειρία τῶν ὁδῶν καὶ τῶν τῆς Συρίας χωρῶν πρόσεστι κτλ. Այս՝ հայերէն բառագրոց մէջ չգտնուող անծանօթ բառը տասնորդ կամ տասնորդէ ըլլալու է. եթէ վերջինը ճիշդ է, կարելի է թերեւս նաեւ տասնակիս ընթանուլ, որ իմաստին շատ լաւ կը յարմարի: Ի չգոյէ ուրիշ լաւագոյն մեկնութեան, զայս իբր լոկ ենթադրութիւն հոս յառաջ կը բերեմ:

գնդերը համաժողով գումարելով, սահմանագլխոյ կիրճերը բռնելու է։ Յետոյ ձիաւորաց ընտիր գնդով փորձառու վաշտապետ մը, եւ կամ ուրիշ բարձրաստիճան ու ճարտար զինուորական մը՝ յառաջ քան թշնամւոյն մեր վրայ յարձակում ընելը, անոր դիմացը ղրկելու է։ Իսկ սա թշնամւոյն հետոցը հետեւելով, զանոնք լաւ մը դիտէ եւ թշնամւոյն ամէն մէկ շարժմանը վրայ ընդհ. հրամանատարին միշտ տեղեկութիւն տայ։„ Շատ հետաքրքրական է նմանապէս Բարսեղ Ա. կայսեր (867—880) կառավարութեան ատեն եղած պատերազմական կարգադրութեանց ստորագրութիւնը, զոր գրած է Կոստ. Ծիր. (de cerim. aulae Byz. I pp. 444 եւ 445)։

*Ὑπόθεσις τῶν βασιλικῶν ταξειδίων καὶ ὑπόμνησις τῶν ἀπλήκτων.*

*Εἰσὶ τὰ ἄπληκτα.*

*Πρῶτον ἄπληκτον· εἰς τὰ Μαλάγινα.*

*Δεύτερον· [εἰς] τὸ Δορύλειον.*

*Τρίτον· εἰς τὸ Καβόρκιν.*

*Τέταρτον· εἰς Κολώνιαν.*

*Πέμπτον· εἰς Καισάρειαν.*

*[Ἕκτον· εἰς Αρμενιάκους εἰς τὸν Δαζιμῶνα.]*

*ὅ τι ὁ δομέστικος τῶν σχολῶν καὶ ὁ στρατηγὸς τῶν Ὀψικίων ὀφείλει ὑπαντᾶν τῷ βασιλεῖ εἰς τὰ Μαλάγινα;*

*ὁ δὲ στρατηγὸς τῶν Θρᾳκησίων εἰς τὸ Δορύλειον·*

*ὁ στρατηγὸς τῶν Ἀνατολικῶν καὶ ὁ στρατηγὸς Σελευκείας ὀφείλουσιν ὑπαντᾶν τῷ βασιλεῖ εἰς τὸ Καβόρκιν*

*Ὅτε εἰ μέν ἐστι τὸ ταξείδιον εἰς Ταρσόν, τὰ λοιπὰ θέματα ὀφείλουσιν ἀποσωρεύεσθαι εἰς Καβόρκιν, οἱ δὲ πρὸς τὰ μέρη τῆς Ἀνατολῆς ὀφείλουσιν ὑπαντᾶν τῷ βασιλεῖ ὁ μὲν Καππάδοξ καὶ ὁ Χαρσιανίτης καὶ ὁ*

*Βουχελλάρις εἰς Κολώνιαν, ὁ δὲ Ἀρμενιάκος καὶ ὁ Παφλαγὼν καὶ ὁ Σεβαστείας εἰς Καισάρειαν.*

[*Ὅτε εἰς Τεφρικήν, τὰ Ἀρμενιάκα θέματα ὀφείλουσιν ἀποσωρεύεσθαι εἰς τὸν Βαθὺν Ῥύακα*].

Այսինքն՝

*Համառօտ տեսութիւն կայսերական պաշտօններու եւ ցանկ զինուորական կայաններու։*

Ա.
1. *կայան՝ Մալագինա,*
2. *կայան՝ Դորիլէոն,*
3. *կայան՝ Կաբորկիոն,*
4. *կայան՝ Կողոնիա,*
5. *կայան՝ Կեսարիա։*

[Բ. 6. *կայան՝ Դասիմոն, Հայկական բանակաթեմին մէջ*]։

*Գիտնալու է որ, արքունեաց անձնապահապետն ու ասիական անձնապահաց հրամանատարը՝ կայսրը Մալակինա պիտի դիմաւորեն. իսկ Թրակեսեանին հրամանատարը՝ Դորիլէոն։ Արեւելեան բանակաթեմին եւ Սելեւկիային հրամանատարները՝ կայսրը Կապորկիոն պիտի դիմաւորեն։*

*Արդ եթէ չուն դէպ ի Տարսոն ըլլայ, միացած գումարտակները Կապորկիոն պիտի համախմբուին. ընդ հակառակն, արեւելեան՝ Կապադովկիա, Քարսիանոն եւ Բուկելլարիոն բանակաթեմերու զօրավարները — Կողոնիա, իսկ Հայկական, Պափլագոնիա ու Սեբաստիա թեմերու հրամանատարքը՝ Կեսարիա կայսրը պիտի դիմաւորեն։*

[*Եթէ արշաւանքը դէպ ի Տեփրիկ ըլլայ, Հայադունդ գումարտակը Բաթիւս Հռիւակս պէտք է որ խմբուի։*]

*Ուստի եւ Կոստանդնի տուած այս տեղեկութիւնէն կը տեսնուի, որ կայսրն ընդդէմ Անհաւա-*

տից խաչակրութիւն բռած ատեն՝ հինգ կայանէ կ՚անցնէր։

Մալագինա առաջին կայանը՝ Ոպտիմատոն երկրին մէջ է։ Հոս մայրաքաղաքի ու ասիական ձիաւոր Թիկնապահաց պետերը՝ կայսրը կը դիմաւորէին։ Ըստ Ռամսէյի, Ոփսիկեցւոց հրամանատարը Դորիւղէոն կայսեր հետ կը միանար։ Այս ենթադրութիւնն այն գլխէ առեալ միայն կրնայ հաւանական ըլլալ, որ Դորիւղէոն Ոփսիկիոնի կը վերաբերէր։ Սակայն Նիկիա, որ Ոփսիկեցւոց հրամանատարին նիստն էր, շատ աւելի մօտ է Մալագինայի, քան Դորիւղէոնի։ Բայց ասոր կը պատշաճէր, որ բոլոր անձնապահք միեւնոյն ժամանակ կայսրը դիմաւորէին։

Երկրորդ կայանն էր Դորիւղէոն։ Կայսերական բանակը չորեքօրեայ՝ Կ. Պոլսէ սկսելով, ձիավարութենէ ետքը հոս կը հասնի. (Իբն Խորդադբէ էջ 82։) Ըստ Ռամսէյի ենթադրութեան, Թրակեսեան գումարտակին զօրավարը հոս կայսերական բանակին կը կցէր։ Զուն յառաջ կը քալէ անցնելով Ակոիւղոնէ, փռիւգական անտառաղուրկ բարձրագաւառէ, կը հասնի Կապորկիոն։

Կապորկիոն կայսերական բանակին հետ կը միանայ Արեւելեան գումարտակը, որուն ճամբարը Ամորիոնի — "ԽԴ. աշտարակաց քաղքին„ մօտերը կը գտնուէր. հոս կը միանայ նաեւ Սելեւկեան գումարտակը։

Եթէ արշաւանքն ընդդէմ Կիլիկեցի Արաբացւոց ըլլայ, կայսերական բանակն աւելի յառաջ կը քալէ դէպ Կողոնիա. հոն անոր կը կցին՝ Կապադովկիա, Քարսիանոն ու Բուկեղարիոն արեւելեան գումարտակները։

Ընդհակառակն պափղագոնացի, հայ ու սեբաստացի (վերջինս Բարսեղ Ա.ոյ ժամանակ Հայկականէն անջատեցաւ) գումարտակները պէտք էին Կեսարիա խմբուիլ։ Պափղագոնիոյ համար այս

արտառոց հրամանը՝ սոյն գաւառին աշխարհագրական դիրքէն կրնայ մեկնուիլ: Լեռներով արտաքուստ ու ներքուստ շրջապատուած գաւառիս միայն արեւելեան կողմը բաց էր: Ուստի Պափլագոնեան գումարտակը դէպ Ամասիա՝ Հայոց թեմին զօրաժողովատեղը, կը քալէ, եւ անկէ հին հռոմէական զինուորական ճամբան բռնելով Կոմանա Պոնտոսի վրայով յառաջ կը շարժի դէպ Սեբաստիա, ուր երրորդ գումարտակը (Սեբաստիա) Պափլագոնացւոց ու Հայոց հետ կը միանայ, որպէս զի միաբան միասին Կեսարիա չուեն: Անկէ անդին կայսերական Պատմիչը կը լռէ: Հաւանականագոյնս կայսերական բանակը Արքեղաիս-Կողոնիա դէպ Հարաւ-արեւելք, իսկ արեւելեան գունդերը Նազիանզու եւ Անդաբաղեայ ճամբով Հարաւ-արեւմուտք դէպ ի Տիանա կը յառաջանան[1]: Հոս վերջապէս բոլոր գումարտակները կը միանան, եւ կը սկսին նոյնհետայն — եթէ Արաբացիք զիրենք կանխելով հռոմէական երկրին վրայ յարձակած չեն — զինուորական գործողութիւնները կատարել: Կայսերական բանակը Փաւստինուպօղիս, Պուղուա

---

1 Արեւելեան ու Կապադովկիա թեմերն անընդմիջական դրացի ըլլալով Հագարացւոց, անոնց դէմ մղուած պատերազմներուն մէջ ամենափորձ գումարտակներն էին, այս պատճառաւ իսկ շատ հարկաւոր, հմմտ. Niceph. Aug. de velitatione bellica praef. 185, 5 ff. Hase: *Βάρδας ὁ μακαρίτης Καῖσαρ ἐν τοῖς γειτονοῦσι τῇ Ταρσῷ θέμασι, τῇ τε Καππαδοκίᾳ καὶ τῷ Ἀνατολικῷ στρατηγῶν, μυριάκις τὰς τῶν Ταρσέων καὶ τῶν λοιπῶν Κιλίκων δυνάμεις ἐτραυμάτισε, καὶ μέγιστα κατ' αὐτῶν ἀνεστήσατο τρόπαια.* Վարդ՝ սահմանի վրայ ձիաւորաց ցիր ու անդ ըրած աւազակաբարոյ կռիւներուն առջեւն առաւ. այս քաջ զօրավարը, որ Նիկեփորոս կայսեր հանճարեղ գործը նոր խմբագրած ու ներածութեամբ ճոխացուցած էր, ինքզինքը համեստութեամբ երախտագէտ աշակերտ կը խոստովանի այնպիսի հմուտ ուսուցչի:

ու Պոդանդոն անցնելէն ետքը՝ կը հասնի Կիլիկիոյ Դրանց (Pylae Ciliciae), ուսկէ անդին կը տարածուի Թշնամեաց երկիրը։

Դէպ արեւելք եղած արշաւանաց մասին մեր ունեցած բոլոր ծանօթութիւնը սա՛չափս է միայն, թէ կայսերական ճամբարը Դասիմոնի ճարակաշատ արօտավայրերուն վրայ կը գտնուի, ընդ մէջ Նէոկեսարիոյ ու Սեբաստիոյ։ Թէ ինչ ճամբով կայս. բանակը հոն կը հասնի. դժուարին է Կաբօրկիոնի վրայէն ենթադրել։ Հաւանական է որ կայսրն Անկիւրիոյ ու Տաբիոյ վրայէն առաջնորդող ուղղակի ու անքոյթ ճամբան բռնէ։ "Հայ գաւառապետները (այսինքն՝ Հայկական, Խաղդիա, Կողոնիա, Սեբաստիա, Թերեւս նաեւ Քարսիանոն թեմերը) Բաթիւս Հռիւակսի քով կայսեր սպասելու էին, ուսկէ շուն յառաջ շարժելով կը հասնէր Տեփրիկէ։

## ԺԲ.

### Բանակին կազմակերպութիւնը, ըստ Իբն Խորդադբէի։

Իբն Խորդադբէ իւր տուած անդին տեղեկութեանցը վրայ մասնաւոր հատուած մ'ալ աւելցուցած է, որուն նիւթն է՝ բիւզանդեան բանակի կազմակերպութիւնն ու զինուորական նուիրապետութիւնը, զոր de Goejeի ըրած թարգմանութենէն առնելով բառ առ բառ յառաջ կը բերեմ (էջ 84)։

Ամբողջ բանակին թիւն է 120.000 մարդ։ Պատրիկ (Baṭrīḳ) մը 10.000 հոգւոյ կը հրամայէ։ Վերջինս իւր իշխանութեանը տակ երկու ռազմապետ (Ṭurmarẖān) ունի, որոնք 5000 հոգւոյ կը հրամայեն։ Ռազմապետ մ'իւր իշխանութեանը տակ հինգ դրունգար (Ṭrungārīn) ունի, որոնք 1000 հոգւոյ կը հրամայեն։ Դրունգարի մ'իշխանութեանը տակ հինգ կոմս (Ḳamāsisa) կայ, իւրաքան-

չիւրին հրամանատարութիւնը 200 հոգւոյ վրայ է։ Կոմսի մը հինգ յիսնապետ (Ḳonṭarhīn) ստորակարգեալ են, որոնց իւրաքանչիւրը 40 հոգւոյ կը հրամայէ։ Յիսնապետն իւր իշխանութեանը տակ չորս տասնապետ (Dāḳarh̲) ունի, որոնց իւրաքանչիւրը 10 հոգւոյ կը հրամայէ։[1]

Հետեւեալ տախտակը (էջ 69) կը ցուցընէ իւրաքանչիւր աստիճանաւորի ենթարկեալ գնդերն ու պաշտօնակալները։ Ցանկիս միջոցաւ անմիջապէս կը տեսնուի օր. աղ. թէ, դրունգար մը իւր հրամանին տակ ունի 1 վաշտ, 5 գունդ, 25 վաշտիկ, 100 տասնաւորք եւ 1000 հասարակ զինուոր, եւ կամ նոյն է եթէ ըսեմ, դրունգար մը կը հրամայէ 5 կոմսի, 25 յիսնապետի, 100 տասնապետի եւ 1000 հասարակ զինուորի։

Պաշտօնակալներու թոշակն է՝ շա՛տ շատ, 40 լիտր ոսկի. սակայն այս թիւն երբեմն կ'իջնայ 36ի, 24ի, 12ի, 6ի, մինչեւ իսկ՝ 1ի։

Զօրաց թոշակը տարեկան 18 եւ 22 դենարի մէջ կը խաղայ։ Սովորաբար երեք տարի անգամ մը թոշակ կ'ընդունէին։ Երբեմն ալ կը պատահի որ չորս, հինգ, վեց տարուան ծառայութեանց փոխարէն թոշակը մէկ անգամով կը վճարուի։

Զինուորական թոշակներու մասին իբն Խորդադբէի աւանդածը վեր ի վերոյ է եւ շատ թերակատար. բաղձալի էր այսպիսի կարեւոր ու հետաքրքրական նիւթի մը վրայ քիչ մ'աւելի ծանրանալ։ Մէն մի աստիճանաւորի ստացած թոշակին վրայ կ'երեւայ թէ ինքն եւս լաւ տեղեկութիւն չունէր։ Եթէ ընդունելու ալ ըլլանք ապահովապէս, թէ Պատրիկ մը 40 փունդ ոսկի կ'ըն-

[1] Ḳontarh̲ ձեւը Pentekontarchos անուան աղաւաղումն է առ Իբն Խորդադբէի։ Անունէս յայտնի է թէ ջոկատը նախնաբար 50 հոգիէ բաղկացած պիտի ըլլար. բայց յետոյ 40ի իջած, թէեւ պաշտօնակալաց հին յորջորջման ձեւն անփոփոխ մնացած է։

| | | Դասապետ (Տօւրմարք) | Վաշտապետ (Դրօւնգար) | Կոմս եւ Գնդապետ (Պենտարք) | Յիսնապետ (Պենտեկոնտարք) | Տասնապետ (Դեկարք) | Հասարակ զին. |
|---|---|---|---|---|---|---|---|
| | Պատրիկի մը հրամանատարութեանը տակ կայ | 2 | 10 | 50 | 250 | 1000 | 10.000 |
| Դաս Տօւրմա | 2 | Դասապետի մը հրամանատարութեանը տակ կայ | 5 | 25 | 125 | 500 | 5000 |
| Վաշտ Բանդա | 10 | 5 | Վաշտապետի մը հրամանատարութեանը տակ կայ | 5 | 25 | 100 | 1000 |
| Գունդ Պենտարքիա | 50 | 25 | 5 | Կոմսի կամ Գնդապետի մը հրամանատարութեանը տակ կայ | 5 | 20 | 200 |
| Վաշտիկ Պենտեկոնտարքիա | 250 | 125 | 25 | 5 | Յիսնապետի մը հրամանատարութեանը տակ կայ | 4 | 40 |
| Տասնաւորք Դեկարքիա | 1000 | 500 | 100 | 20 | 4 | Տասնապետի մը հրամանատարութեանը տակ կայ | 10 |
| Հասարակ զինուոր | 10.000 | 5000 | 1000 | 200 | 40 | 10 | Հասարակ զին |

դունէր, սակայն միւս կարգերը դժուարութիւն կը յարուցանեն։ Հոս կցուած մը կ'ընձեռէ մեզի "Քրիստոսասէր Լեւոն կայսեր ժամանակ նահանգային կուսակալներու (հրամանատարք) եւ սահմանաբերդերու հրամանատարաց (սահմանակալ) ըստ օրինաց սահմանուած թոշակին աստիճանը„. Εἰσὶν αἱ κατὰ τύπον ῥόγαι τῶν στρατηγῶν καὶ κλεισουραρχῶν, καθὼς ἐρογεύοντο ἐπὶ Λέοντος τοῦ φιλοχρίστου δεσπότου. Const. de cerim. II 50 էջ 696 ff.

Ըստ այսմ նահանգային կուսակալք հետեւեալ հինգ դասակարգի կը բաժնուին.

Ա. դաս՝ 40 փունդ ոսկի = 45.684 Ֆր.։

Այս կարգին կը վերաբերին՝ 1. Արեւելեան, 2. Հայկական, 3. Թրակեսեան բանակաթեմերը։

Բ. դաս՝ 30 փունդ ոսկի = 34.263 Ֆր.։

Այս կարգէն են՝ 1. Ոփսիկիոն, 2. Բուկեղարիոն, 3. Մակեդոնիա։

Գ. դաս՝ 20 փունդ ոսկի = 22.842 Ֆր.։

Ասոր կը վերաբերին՝ 1. Կապադովկիա, 2. Քարսիանոն, 3. Պափղագոնիա, 4. Թրակիա, 5. Կողոնիա։

Ասոր կը վերաբերի դարձեալ 6. Խաղդիայի զօրավարը, որ միայն 10 փունդ (= 11.421 Ֆր.,) թոշակ կ'ընդունէր, բայց նոյնչափ ալ իր երկրին մաքսերէն (κουμέρκιον) կը ստանար։ Այս կարգին կը վերաբերի նմանապէս Միջագետաց զօրավարը, որուն միմիակ եկամուտը կամ թոշակն էր՝ իր սահմանագաւառին մաքսերէն հաւաքուած գումարը։

Դ. դաս՝ 10 փունդ ոսկի = 11.421 Ֆր.։ Այս եկամուտն ունէին երեք փոխ-ծովակալք.

1. Կիբիւրէոտաց, 2. Սամոսի, 3. Եգէական ծովու։

*Ե. դաս՝* 5 *փունդ ոսկի* = 5710,50 *ֆր.։ Այս չնչին գումարը կ'ընդունէին անկախութեան բարձրացուած սահմանակոմսութիւնք.*

1. *Սերբաստիա,* 2. *Լիւկանդոս,* 3. *Սելեւկիա,* 4. *Լէոնտոկոմիս։*

*Այս որոշ կարգն ունէին ասիական ամբողջ եւ եւրոպական երկու — Մակեդոնիա եւ Թրակիա — թեմերը։ Ընդհակառակն պետութեան արեւմտեան մասին մէջ նահանգներն ինքնին իրենց կուսակալէն եկամուտը կը հայթայթէին։ —*

*Ցարդ ըսուածներուն վրայ ամփոփ գաղափար մը տալու համար, ուսումնասիրութեանս ետեւը կը յաւելունք բանակաթեմերու համեմատական ցուցակն ու ասիացի գումարտակներու տախտակը։*

| Քաղաքական վարչութեան նահանգները, Յուստինիանոս Բ.ի ժամանակ (685—695) | Նոր կազմակերպուած բանակին գումարտակները. Յուստինիանոս Բ.ի ժամանակ | Լեւոն Գ.ի (717–74 Լեւոն Ե.ի (813–82 եւ Միքայէլի (820–8 ժամանակ թեմերու բ ժամանակը |
|---|---|---|
| | Ա. Ասիական ցամաքային զօրութիւնը: | Նահանգք յայսկո Բոսփորի |
| Բիւթանիա, Հելլեսպոնտոս Փռիւգիա Բ. | Ա. Ոփսիկիոն բանակաթեմ: | 1. ալ Օբսիկ |
| Բիւթանիա, Փռիւգիա Բ. | | 2. ալ Օփտի-Մա |
| Պափղագոնիա | | 3. Ափլաջունիա |
| Հոնորիաս, Գաղատիա Ա. Փռիւգիա Բ. | | 4. ալ Բուկոլար |
| Պիսիդիա, Լիւկաոնիա Փռիւգիա Բ. | Բ. Արեւելեան բանակաթեմ | 5. ան-Նաթոլու |
| Ասիա, Լիւդիա, Կարիա, Փռիւգիա Ա. | | 6. Տարկասիս |
| Կապադովկիա Բ.: | | 7. Կաբադոկ |
| Իսաւրիա | | 8. Սալուկիա |
| Հելլեսպոնտոս | Գ. Հայկական բանակաթեմ | 9. ալ-Արմինիակ |

| …ադայ փոփոխութիւնք | Լևոն Զ. Իմաստասիրի (886–911) նոր բաժանումները | Կոստ. Է. Ծիրանածնի (912–959) փոփոխութիւնները |
|---|---|---|
| | *Θέματα τῆς Ἀνατολῆς ἤγουν τῆς Ἀσίας* | |
| | $\overline{\delta}$ *θέμα τὸ καλούμενον Ὀψίκιον* | |
| | $\overline{\varepsilon}$ *θέμα τὸ καλούμενον Ὀπτίματον* | |
| | $\overline{\zeta}$ *θέμα τὸ καλούμενον Παφλαγόνων* | |
| | $\overline{\varsigma}$ *θέμα τὸ καλούμενον Βουκελλαρίων* | |
| | $\overline{\alpha}$ *θέμα τὸ καλούμενον Ἀνατολικόν* | |
| | *θέμα* $\overline{\gamma}$ *τὸ τῶν Θρακησίων* | |
| | $\overline{\iota\varsigma}$ *θέμα τὸ καλούμενον Σάμος νῆσος θέμα μικρὰ Καππαδοκία* (Const. de Them. 19, 17; 20, 1). | |
| | $\overline{\iota\gamma}$ *θέμα Σελευκείας* | Սելևկիա. Ըստ. Կոստ. Ծիր. վասն Թեմ. 36, 2 պարզապէս սահմանագաւառ մըն էր. Ռոմանոս (920–944) զայն զօրավարութեան բարձրացուց։ |
| | *θέμα* $\overline{\beta}$ *τὸ καλούμενον Ἀρμενιακόν* | |

| Քաղաքական վարչութեան նահանգները, Յուստինիանոս Բ.ի ժամանակ (685—695) | Նոր կազմակերպուած բանակին գումարտակները, Յուստինիանոս Բ.ի ժամանակ։ | Լեւոն Գ.ի (717- Լեւոն Ե.ի (813- եւ Միքայէլ (820- ժամանակ թեմերու ժամանակները։ |
|---|---|---|
| | Ա. Ասիական ցամաքային զօրութիւնը | Նահանգք յայսկոյ Բոսպորի |
| Մեծ Հայք | | |
| Հայք Ա. Յուստինիանա Դ. | | Արաբացւոց իշխան թեանը տակ |
| Գաղատիա Ա., Կապադովկիա Ա., | | 10. Խարսիոն |
| Պոլեմոնեան Պոնտոս | | 11. Խալդիա Հա կանագոյնս լոկ ան սահմանակոմսութ (793°) |
| Փասիս (Լազիկէ) | 696ին Արաբացւոց ձեռքը կ'անցնի Սերգիոս Պատրկի մատնութեամբը (վան. Թեմ. 370, 1—3) | Փասիս անկախ |
| Մեծ Հայք | կամաց Հայոցմէ մասնաւորելով մինչեւ 793 Հայկական թեմին կը վերաբերի (Թէոփ. 469, 18.) | Արաբացւոց իշխա թեանը տակ։ |

| | | |
|---|---|---|
| ...տագայ փոփոխութիւնք։ | Լեւոն Զ. Իմաստասէրի (886—911) նոր բաժանումները. | Կոստ. Է. Ծիրանածնի (912—959) ըրած փոփոխութիւնը։ |
| | Θέματα τῆς Ἀνατολῆς ἤγουν τῆς Ἀσίας | |
| | $\overline{\iota}$ θέμα Κολωνείας | |
| | $\overline{\iota\alpha}$ θέμα Σεβαστείας | |
| | Արաբացւոց իշխանութեանը տակ | τὸ τοῦ Χοζάνων θέμα τὸ τοῦ Ἀσμοσάτον θέμα Ռոմանոսի ժամանակ ստացուած։ |
| ...արսիանոն՝ Պարսից ...այ տարուած յաղ-...ութիւններէն ետքը, ...ւոն Է.ի ատեն — ...նչուշա Եւստաթիոս ...մէն յառաջ — ...զօրավարութեան ...սահմանին կը բարձ-...նայ (վրն. Վարչ. 227) | $\overline{\eta}$ θέμα τὸ καλούμενον Χαρσιανόι εἰς θέματος τάξιν καὶ στρατηγίδα μέχρι τοῦ νῦν ἐχρημάτισε (de Them. 20, 6)· | |
| | $\overline{\eta}$ θέμα τὸ καλούμενον Χαλδία. | |
| | անկախ | |
| | $\overline{\vartheta}$ θέμα Μεσοποταμία Լեւոնէ կազմակերպուած. ինքն այս նորակազմ թեմին կը ստորակարգէ 1. ἡ τῆς Καμάχας τοῦρμα 2. ἡ Κελτζινῆς τοῦρμα. | |

| Քաղաքական վարչութեան նահանգները, Յուստինիանոս Բ.ի ժամանակ (685—695) | Նոր կազմակերպուած բանակին զօրամասերը, Յուստինիանոս Բ.ի ժամանակ | Լեւոն Գ.ի (717—74 Լեւոն Ե.ի (813—8 եւ Միքայէլի (820—8 ժամանակ թեմերու բ ժանումները։ |
|---|---|---|
| | Ա. Ասիական ցամաքային զօրութիւնը | Նահանգք յայսկոյ Բոսփորի |
| Յուստինիանա Դ.<br><br>Կապադովկիա Ա. Հայք Ա.<br><br>Կիլիկիա Ա.<br>Կիլիկիա Բ. | | Աւերակ<br><br>Արաբացւոց իշխան թեանը տակ։ |
| | ծովային զօրութիւնը | Նոյն ատեն |
| | Զ. Կարաբիսեանք նաւէ՝<br><br>ὁ θεματικὸς στόλος. Թէոփ. շար. 55, 19. | ὁ δρουγγάριος τῶ Κιβυραιωτῶν<br><br>ὁ δρουγγάριος τῆς Δω δεκανήσου. |
| | Բ. Եւրոպական ցամաքային զօրութիւնը | Նահանգք յայնկոյ ծովու։ |
| | | 12. Թաֆրա (de Goej Ṭāflā) |

| | | |
|---|---|---|
| …ատադրայ փոփոխութիւնք։ | Լեւոն Զ. Իմաստասէրի (886—911) նոր բաժանումները։ | Կոստ. Է. Ծիրանածնի (912—959) ըրած փոփոխութիւնները։ |
| | *Θέματα τῆς 'Ανατολῆς ἤγουν τῆς 'Ασίας* | |
| | Աւերակ | Ռոմանոս (վրան կ'աւելցընէ Ռոմանուպոլիս եւ Հանձիթ)<br><br>*$\overline{ιβ}$ θέμα τὸ καλούμενον Λυκανδοῦ* Կոստանդինի ժամանակ կազմակերպուեցաւ. յառաջագոյն սահմանակոմութիւն էր (վսն. Վարչ. 228. 17) |
| | *Θέματα τῆς 'Ανατολῆς ἤγουν τῆς 'Ασίας* | |
| | *$\overline{ιδ}$ θέμα τὸ καλούμενον Κιβυρραιωτῶν*<br><br>*$\overline{ιζ}$ θέμα τὸ καλούμενον Αἰγαῖον πέλαγος* որ կը կոչուի նաեւ՝ *τὸ θέμα τῶν πλωιζομένων.* Const. de Them. 41. 11. | |
| | *Θέματα τῆς δύσεως ἤγουν τῆς Εὐρώπης.* | |
| | | |

| Քաղաքական փարչութեան նահանգները, Յուստինիանոս Բ.ի ժամանակ (685—695) | Նոր կազմակերպուած բանակին գումարտակները. Յուստինիանոս Բ.ի ժամանակ | Լեւոն Գ.ի (717– Լեւոն Ե.ի (813– եւ Միքայէլի (820– ժամանակ թեմերու ժամանակները |
|---|---|---|
| | Բ. Եւրոպական ցամաքային զօրութիւնը | Նահանգք յա… ծովուն. |
| Թրակիա, Եւրոպա, Հեմիմոնտոս | Գ. Թրակեան գումարտակ | 13. Թրակիա |
| Մակեդոնիա Ա. եւ Բ. (Կոստանդնի յիշատակած [β—ς] թեմերը մեծաւ մասամբ Աւարներու ու Սլաւներու ձեռքն էին։) | | 14. Մակեդոնիա |
| Հելլաս, Կրետէ | | |
| Դիւռաքիոն | | |

| …եսագայ փոփոխութիւնք | Լեւոն Զ. Իմաստասէրի (886—911) նոր բաժանմունքը | Կոստ. Է. Ծիրանածնի (912—959) փոփոխութիւնքը |
|---|---|---|
| | *Θέματα τῆς δύσεως ἤγουν τῆς Εὐρώπης.* | |
| | $\bar{α}$ *θέμα τὸ ὀνομαζόμενον Θρακῷον* | |
| | $\bar{β}$ *θέμα Μακεδονίας* | |
| | $\bar{γ}$ *θέμα Στρυμόνος* | |
| | $\bar{δ}$ *θέμα Θεσσαλονίκης* | |
| …իլաս. Այս թեմին …հաղմակերպութիւնը …ամանակակից է Պե- …ոպոնեսեան թեմին հետ: | $\bar{ε}$ *θέμα Ἑλλάς* | |
| Պելոպոննես. Այս …եմը Միքայէլ Գ.ի …42—67) ժամանակ …ազմակերպուեցաւ. ա- …ր ատեն առաջին …նգամ Պելոպոննեսի …րավար կը յիշատա- կուի: | $\bar{ς}$ *θέμα Πελοπόννησος* | |
| …իկոպոլիս } Երկու …ուրաքիոն } թեմերն …Բարսեղէ (867—82) …ազմակերպուեցան: …ումայեցիք յառաջա- …յն ծովեզերքն ամ- …փուած էին. Լեւոնի …ահմանագրութենէն …ατύπωσις) կը տես- | $\bar{η}$ *θέμα Νικόπολις*<br>$\bar{θ}$ *θέμα Δυρράχιον* | |

| Քաղաքական վարչութեան նահանգները, Յուստինիանոս Բ.ի ժամանակ (685—695) | Նոր կազմակերպուած բանակին գումարտակները. Յուստինիանոս Բ.ի ժամանակ | Լեւոն Գ.ի (717–74 Լեւոն Ե.ի (813–82 եւ Միքայէլ (820–82 ժամանակ թեմերու բ ժանմունքը |
| --- | --- | --- |
| | Բ. Եւրոպական ցամաքային զօրութիւնը | Նահանգք յանկոյ ծովուն |
| | | Հռոմայեցւոց մի երկիրներն են, նա յԱրեւմուտս՝ Համ Սիկիլիա, որ կղզի մ է. իրն խորդ. էջ 78 |
| | Ե. Իտալական գումարտակ | Հռոմայեցւոց գլխաւ կղզիները |
| Վենետիկ, Իստրիա, Էմիլիա, Անոնարիա, Պիկինոն, Ուրբիկարիա-Կամպանիա, Ապուլիա | ա. Վեցերորդապետն Իտալիոյ | |
| Սիկիլիա | բ. Պատրիկն Սիկիլիոյ | Սիկիլիա |
| Կալաբրիա | դքսութիւն Կալաբրիոյ | Սիկիլիոյ Պատրիկին ի խանութեանը 22 քաղաք կայ. Կո վան. Թեմ. Բ. 60. |
| | ἰστέον ὅτι ἡ Καλαβρίας στρατηγίς δουκάτον ἦν τὸ παλαιὸν τῆς στρατηγίδος Σικελίας. de admir. 225, 1. | — Գէորգ Կիպր. 57 մինչեւ 599: |

| ...ագայ փոփոխութիւնք | Լեւոն Զ. Իմաստասիրի (886—911) նոր բաժանմունքը | Կոստ. Է. Ծիրանածնի (912 - 959) փոփոխութիւնքը |
|---|---|---|
| | Θέματα τῆς δύσεως ἤγουν τῆς Εὐρώπης | |
| ...թէ իրմէ սերունդ ...յառաջ կայսերա- իշխանութիւնք ...ուած ի ներքս ...ոցած ու տարա- ծուած էր։ | Ἕως ὧδε ὁ μερισμὸς τῆς βασιλείας ἐγένετο τοῦ κρατοῦντος βασιλέως τὸ Βυζάντιον. τὰ δὲ ἀντίπερα, ἅπερ Ἰόνιος κόλπος, τῷ βασιλεύοντι τῆς Ῥώμης ὑπήκοα Const. de Them. 57, 4–6. | |
| | ι θέμα Σικελία | |
| ...աեղ Սիկիլիան ...ցընելէն ետքը կազմակերպէ Լո- ...արդիա թեմը, ա- ...հետ միասին նաեւ ...ῦρμα τὰ νησία. | ια θέμα λογουβαρδίας որուն τοῦρμαν էր Κεφαλληνία ἤγουν τὰ νησία. de admin. 224, 20. | |

| …ոյ փոփոխութիւնք | Լեւոն Զ. Իմաստասէրի (886—911) նոր բաժանումները | Կոստ. Է. Ծիրանածնի (912—959) փոփոխութիւնները |
|---|---|---|
| | *Θέματα τῆς δύσεως ἤγουν τῆς Εὐρώπης* | |
| | ζ̄ *θέμα Κεφαλληνίας ἤγουν τῶν νησίων* Լեւոն Զ. է կը կազմակերպուի. (տե՛ս թեմ. անդ. էջ 54։ | |
| | ιε̄ *θέμα τὸ καλούμενον ἐπαρχία Κύπρος.* | |

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. *Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Փր. 1.25*

Բ. *Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց. (պատկերազարդ:) 1890: 8° Երես՝ 50: Փր. 1.—*

Գ. *Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Փր. 1.25*

Դ. *Դեմետրիոս Տաձի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Փր. —.85*

Ե. *Տաշեան Հ. Յակովբոս Վ., ՈւսումնասիրութիւնքՍտոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Փր. 3.—*

Զ. *Աշպէր Տըվշէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Փր. 1.—*

Է. *Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութենից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Փր. 1.25*

Ը. *Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Փր. 1*

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: 8° Երես՝ 232: Փր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ը+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զընկատիպ.) 1893: 8° Երես՝ Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտակ՝ 55 պատկ.:) 1894: 8° Երես՝ 103: Փր. 2.—:

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փորքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտր. Ա.: Ա—Զ: Ա. Նեմեսիոս: Բ. Պրոկղ Դիադոխոս: Գ. Խոսրովիկ: Դ. Գիրք Հերձուածոց կամ Եպիփան: Ե. Պրոկղ: Զ. Սեկունդոս իմաստասէր: 1895: 8° Երես՝ ԺԲ+294: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Փր. 2.50

ԺԸ. Տիգրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրոպոլիսը կամ Նկարագիր Գերլա

Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8 Երես՝ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., "Վարդապետութիւն առաքելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: 8° Երես՝ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: 8° Երես՝ Է+62: Ֆր. 1.—

ԻԲ Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան: 1897. 8° էջ ԺԶ+107: Ֆր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Ֆր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Ֆր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897 8° էջ Ը+130: Ֆր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Գիրք (կամ յօդուած) գրելու արուեստը: Նորոս հեղինակներուն ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը 1898: 8° էջ Է+123: Ֆր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու Նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: 8°, 56 էջ: Ֆր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչու-

թեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: 8° ԺԱ+202 էջ: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փաւստոս Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն: 1898. 8° 175 էջ: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899, 8° Երես՝ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1780—1825. (1 զնկատիպ:) 1899: 8°. Երես՝ Է+558: Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: 8° Երես՝ Է+124: Փր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յակովբոս Վ. Տաշեան: (1 աշխարհգրկն տախտակով:) 1899: 8° Երես՝ 48: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: 8° Երես՝ ԺԱ+198: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ.. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է–Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: 8° Երես՝ ԺԲ+388: Փր. 4.50

ԼԸ. Գր. Տէր-Պօղոսեան, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: 8° Երես Ը+110: Փր. 1.50

ԼԹ. Վէբէր Դր. Սիմոն, Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բառնաբաս Վ. Պիլէզիկճեան: 1901: 8° Երես Ե+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ Նոցին քաղուածք որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: 8° Երես 262: Ֆր. 4.50

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: 8° Երես Ը+72: Փր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հատոր Ա.: 1903: 8° Երես Ը+204: Ֆր. 3.—

ԽԳ. Մարկարտ Դր. Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: 8° Երես 44: Ֆր. – .75

ԽԴ. Գէլցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: 8° Էջ Է+83: Ֆր. 2.—

